Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 4—5 (59)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն —
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ 1939

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4—5 (59)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1939

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՂՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՑԱՐԱՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ 68-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Մարտի 18-ը— պատմական մեծ տարեթիվ է, վորն ամեն տարի նշում են ամբողջ աշխարհի պրոլետարներն ու աշխատավորները: Սրանից 68 տարի առաջ Փարիզի հերոսական պրոլետարիատը բարձրացրեց պրոլետարական հեղափոխության դրոշը, բարձրացրեց պրոլետարիատի դիկտատուրայի դրոշը:*

*Փարիզի պրոլետարիատը, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, իշխանությունն իր ձեռքը վերցնելով հաստատեց իր դիկտատուրան, մասսաներին*

կոչեց ինքնուրույն քաղաքական պայքարի, անմիջականորեն մասնակցելու նոր տիպի պետության շինարարությանը։

1871 թվին բոլոր յերկրների շահագործական դասակարգերը դողդողացին Փարիզի պրոլետարիատի՝ «Կեցցե՛ Կոմունան» վորոտընդոստ կանչով։

Պրոլետարիատի դիկտատուրան 1871 թվին գոյություն ունեցավ ընդամենը 72 որ։ Սակայն այդ կարճ ժամանակամիջոցում Փարիզի հերոսական կոմունարները անթառամ փառքով ծածկեցին իրենց։

«... Կոմունան XIX դարի բանվորական հոյակապ շարժման մեծագույն որինակն է» (ԼԵՆԻՆ)։

Անմահ է Փարիզի Կոմունայի գործը։ Բանվորական և աշխատավորական մասսաները հավիտյանս իրենց սրտերում կըպահպանեն հերոսական կոմունարների հիշատակը։

Լենինը բազմիցս մատնանշել է Փարիզի Կոմունայի հսկայական նշանակությունը։

«Մենք բոլորս ներկայիս շարժմամբ կանգնած ենք Կոմունայի ուսերի վրա» (ԼԵՆԻՆ)։



Լենինը մատնանշում եր, վոր

«Փարիզի Կոմունան մեզ տվեց բանվորների դեպուտատների խորհրդի տիպի պետության, կազմակերպված և զինված բանվորների անմիջական իշխանության, բանվորների և գյուղացիների դիկտատուրայի որինակը» (ԼԵՆԻՆ)։

# ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՅԻ ԾԱԳՈՒՄԸ

1848 թվի հեղափոխության ջախջախումից հետո, Ֆրանսիայում վերականգնըվեց միապետությունը։ Միապետության գլխին կանգնեց Նապոլեոն առաջինի ազգականներից ավանտյուրիստ Լուի Բոնապարտը, վորն իրեն հորջորջեց Նապոլեոն III։ Լուի Բոնապարտը և նրա կլիկան ներկայացնում եյին հակահեղափոխական բուրժուազիայի կառավարությունը։

Կայսերական արքունիքի փճացավածությունը և մասսայական ավազակությունները, խոշոր բուրժուազիայի և կալվածատերերի հարստացումը Ֆրանսիայի բանվոր դասակարգի և աշխատավորական մասսաների անսահման շահագործման հաշվին, տեռորը, անտանելի հարկերը և

ավանտյուրիստական պատերազմները — դժգոհություն և զայրույթ առաջ բերին աշխատավորական մասսաների մեջ ընդդեմ Նապոլեոն III-ի ռեժիմի: Սակայն Բոնապարտի և նրա կլիկի արյունալի ռեժիմի դեմ ամենից ավելի վճռականորեն ու ակտիվ կերպով հանդես յեկավ պրոլետարիատը:

Չնայած ռեպրեսիաներին ու հալածանքներին, Ֆրանսիական պրոլետարիատը սկսեց պայքարել: 60-ական թվականների կեսերից մասսայական գործադուլային շարժում ծավալվեց, վորն ընդգրկեց Ֆրանսիայի համարյա բոլոր արդյունաբերական խոշոր կենտրոնները: Գործադուլային պայքարի ալիքն առանձնապես լայնորեն ծավալվեց 1869 թվին: 1870 թվին բանվորական ցույցերը քաղաքական բնույթ եյին կրում և անցնում եյին՝ «Կեցցե՛ հանրապետությունը», «Մահ բոնապարտներին» լոզունգներով: Յերկրորդ կայսրության փտած շենքն ավելի ու ավելի յեր ճեղքվածքներ տալիս:

Բոնապարտիստական կառավարության վոտքի տակ հողն սկսեց այրվել: Դասակարգային սրված պայքարի և հեղափո-



խական ճգնաժամի հասունացման պայմաններում Նապոլեոն III-ի կառավարությունը իր տիրապետության պահպանման ուղիներ ու միջոցներ եր վորոնում: Նա վորոշեց այն գտնել արտաքին ավանտյուրայի, Պրուսիայի դեմ մղվելիք պատերազմի մեջ:

1870 թվի հուլիսի 19-ին սկսվեց Ֆրանս-պրուսական պատերազմը: Սեպտեմբերի 2-ին Ֆրանսիական բանակը լիակատար պարտություն կրեց Սեդանի մոտ— Ֆրանսիական հարյուր հազարանոց բանակը Նապոլեոն III-ի հետ միասին գերի վերցվեց պրուսական զորքերի կողմից: Այդ կատաստրոֆը ցույց տվեց, վոր պաշտոնական Ֆրանսիան, Լուի Բոնապարտի Ֆրանսիան— նեխված դիակ ե:

Պարտության լուրը ուժեղագույն վրդովմունք ու զայրույթ առաջ բերեց ժողովրդի մեջ: 1870 թվի սեպտեմբերի 4-ին Փարիզի ապստամբած պրոլետարիատը հանրապետություն հռչակեց: Ամբողջ Ֆրանսիական ժողովուրդը վողջունեց հանրապետության հռչակումը:

Սակայն իշխանությունը գրավեցին «լիբերալ ստահակները և յերկերեսանի

միապետականները», վորոնք իրենց հռչակեցին «ազգային պաշտպանության» կառավարություն:

Այդ կառավարությունը գործնականում հակահեղափոխական միապետական դավադրության և ազգային պարտքի ստոր դավաճանության կենտրոն եր:

Տեսնելով Փարիզի պրոլետարիատի հեղափոխական տրամադրությունը, ազգային դավաճանության կառավարությունը շտապեց համաձայնության գալ Պրուսիայի հետ՝ Փարիզը հանձնելու և ամոթալի խաղաղության կնքելու մասին: 1871 թվի հունվարի 28-ին կառավարությունը հայտարարեց Փարիզի կապիտուլյացիան և դրանով իսկ իր ձեռքերն ազատեց հեղափոխական պրոլետարիատի դեմ պայքարելու համար:

Միապետական ազգային ժողովը, վորն ընտրվեց պրուսական հրամանատարության ոժանդակությամբ, մի շարք միջոցներ ձեռք առավ, վորոնք ե՛լ ավելի վատթարացրին աշխատավորության ծանր վիճակը:

Նախապատրաստվող հակահեղափոխական միապետական խռովության այդ պայ-



մաններում Փարիզի պրոլետարիատը համառ կերպով կազմակերպվում եր ընդդիմադրություն ցույց տալու համար: Նոր հեղափոխությունը տարերայնորեն հասունանում եր: Վաշտերի և գումարտակների պատվիրակներից ընտրվեց Ազգային Գվարդիայի Կենտրոնական Կոմիտե, վորը մեծ մասամբ կազմված եր բանվորներից:

Մարտի 17-ին կառավարությունը հրամայեց զինաթափել ժողովրդի ստեղծած Ազգային Գվարդիան, վերցնել նրանցից թնդանոթները, վոր ձեռք եյին բերված հանրապետական Փարիզը պրուսացիներից պաշտպանելու համար ժողովրդի հավաքած միջոցներով:

Մարտի 18-ին վաղ առավոտյան Տիերի զորքերը շարժվեցին դեպի Մոնմարտր, վորտեղ գտնվում եյին այդ թնդանոթները, հույս ունենալով անակնկալ կերպով հարձակվել Ազգային Գվարդիայի վրա և գրավել նրա հրետանին: Սակայն այդ մտադրությունը ձախողվեց: Ազգային Գվարդիայի Կենտրոնական Կոմիտեն ընդդիմադրություն կազմակերպեց: Հարձակվող զինվորները, հանդիպելով ազգային գվարդիականների գրոհին և շրջապատվելով

ժողովրդի կողմից, հրաժարվեցին կռվելուց և, գնդակահարելով իրենց գեներալներին, սկսեցին յեղբայրանալ ժողովրդի և ազգային գվարդիականների հետ: Ապստամբությունը հաղթեց: Հենց այդ օրն էլ Տիերը և նրա կառավարությունը խուճապահար փախան Փարիզից:

Մարտի 18-ին սկսվեց առաջին պրոլետարական հեղափոխությունը: Փարիզի բանվորները իշխանությունը վերցրին իրենց ձեռքը:

Ժամանակավոր կառավարության դերն իր վրա վերցրեց Ազգային Գվարդիայի Կենտրոնական Կոմիտեն:

Փարիզի Կոմունան ընտրվեց մարտի 26-ին, մարտի 28-ին Կոմունայի հռչակումը — Փարիզի բոլոր աշխատավորների տոնն էր: Կոմունայի մեջ ընտրվեցին 85 հոգի: Դրանցից 25-ը բանվորներ էյին՝ 39-ը՝ ծառայողներ, ինտելիգենտներ և այլն:

## ԿՈՄՈՒՆԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԵՅՈՒԹՅՈՒՆԸ

Իշխանությունն իր ձեռքը վերցրած պրոլետարիատը սկսեց խարխափելով, սոսկ



հեղափոխական բնազդով ղեկավարվելով, կառուցել նոր տիպի պետություն՝ կառավարման դեմոկրատական, պրոլետարական մշտական օրգաններով:

Իր գոյության 72 օրվա ընթացքում Կոմունան քաղաքական մի շարք միջոցառումներ կիրառեց, վորոնք համաշխարհային պատմական նշանակություն ունեն:

Կոմունան ջախջախեց բուրժուական-դեմոկրատական պետական հին մեքենան, զինվորական, վարչական և դատական ապարատը, վոր բուրժուազիան ստեղծել էր աշխատավոր մասսաներին ստրկացնելու և կեղեքելու համար:

Կոմունան վոչնչացրեց մշտական բանակը և այն փոխարինեց զինված ժողովրդով: Նա ցրեց շահագործող դասակարգերին ծառայող վոստիկանությունը և հասարակական կարգ ու կանոնի պահպանությունը հանձնեց բուն ժողովրդի ձեռքը: Կոմունան վոչնչացրեց աստիճանավորների արտոնությունները և վոչնչացրեց աստիճանավորների կաստան: Նա վոչնչացրեց պաշտոնյաների բարձր ռոճիկները և պաշտոնատար անձանց համար բանվորի միջին աշ-

խատավարձից վոչ բարձր վարձատրություն սահմանեց։

Այն իշխանությունը, վոր 1871 թվին ստեղծեցին Փարիզի բանվորները, նոր տիպի իշխանություն եր, Խորհուրդների իշխանության նախատիպը, պրոլետարիատի դիկտատուրայի սաղմը։

Կոմունան դեկրետ հրատարակեց յեկեղեցին պետությունից բաժանելու և յեկեղեցական գույքը բռնագրավելու մասին։ Այդ դեկրետով նա վոչնչացրեց մասսաների հոգևոր կեղեքման զենքը և «տերտերի իշխանությունը»։

Կոմունան, քաղաքացիական պատերազմի խիստ դժվարին պայմաններում մի ամբողջ շարք դեկրետներ հրատարակեց, վորոնց նպատակն եր բարելավել բանվոր դասակարգի և աշխատավորական մասսաների դրությունը։

Կոմունան ձրի ուսուցում մտցրեց բոլոր ուսումնական հաստատություններում, դպրոցներն ազատեց յեկեղեցու վորևե միջամտությունից։

Իր տնտեսական քաղաքականության մեջ Կոմունան ղեկավարվում եր աշխատավորության պահանջներով և շահերով։



Կոմունան դեկրետ հրատարակեց տուգանքները և բանվորների աշխատավարձից հանումներն արգելելու մասին, վոր լայնորեն կիրառում եյին ձեռնարկատերերը, ինչպես նաև դեկրետ հրատարակեց չքավորների՝ լոմբարդներում դրավ դրված իրերն առանց հատուցման վերադարձնելու մասին։

Բացի դրանից, Կոմունան մի շարք դեկրետներ հրատարակեց հաշմանդամներին և ազգային գվարդիականների ընտանիքներին ապահովելու մասին։

Կոմունան վորոշեց նույնպես քանդված ծայրամասերի բանվորներին տեղավորել Վերսալ փախած բուրժուաների բնակարաններում։ Կոմունան դեկրետ հրատարակեց բնակարանավարձը հետաձգելու մասին, վորը թեթևացրեց չքավորության դրությունը։

Քաղաքական խոշոր նշանակություն ուներ տերերի թողած արհեստանոցներն ու ֆաբրիկաները բանվորական ընկերություններին հանձնելու դեկրետը։

Դրա հետ միասին, պայքարելով յերկաթուղային վարչության սաբոտաժի դեմ, յերկաթուղային ճանապարհների գլխավոր

վերահսկիչ և նրա 7 օգնականներ ընտրըվեցին։ Այդպիսի միջոցառումներ անցկացվեցին նաև փոստային վերատեսչության մեջ, պետական տպարանում և մի շարք այլ ձեռնարկություններում ու հիմնարկություններում։

Փարիզի Կոմունայի փորձը հարստացրեց մարքսիզմի գանձարանը։ Եթե մինչև փարիզի Կոմունան Մարքսը, հիմնվելով 1848 թվի հեղափոխության փորձի վրա, սովորեցնում էր բուրժուական պետական մեքենան ջարդելու անհրաժեշտությունը, ապա Փարիզի Կոմունայի փորձը, հանրագումարի բերված և լուսաբանված Մարքսի դիալեկտիկական մատերիալիզմով, ցույց տվեց, թե ինչով փոխարինել բուրժուական պետական ջախջախված մեքենան։

«Կոմունան,— գրում է Լենինը,— պրոլետարական հեղափոխության՝ բուրժուական պետական մեքենան ջարդելու առաջին փորձն է և «վերջապես հայտնագործված» քաղաքական ձևը, որը կարող է և պետք է փոխարինի ջարդվածին (Լենին)։



# ԿՈՄՈՒՆԱՅԻ ԱՆԿՈՒՄԸ

Ֆրանսիական բուրժուազիան, հեղափոխական ժողովրդի հետ դատաստան տեսնելու համար, դաշինք կնքեց գերմանական նվաճողների հետ։ Բիսմարկից 100 հազար ֆրանսիական գերի ընկած զինվոր ստանալով, վերսալցիները, Տիերի գլխավորությամբ, հարձակվեցին հեղափոխական Փարիզի վրա։ Մայիսի 15-ից հետո սկսվեցին արյունահեղ մարտեր։ Կոմունարները հերոսաբար պաշտպանում էին յուրաքանչյուր փողոցը, բարիկադների վրա կռվում էին և՛ կանայք, և՛ ծերեր, և՛ նույնիսկ երեխաներ։ Մայիսի 21-ին վերսալցիները, գերմանացիների օգնությամբ, ներխուժեցին Փարիզ։

Վերսալցիների՝ Փարիզ ներխուժելուց հետո յոթ կոմունարները դեռևս մի ամբողջ շաբաթ ամենավճռական քաջարի ընդդիմադրություն էին ցույց տալիս։ Մայիսի 28-ին ընկավ վերջին բարիկադը։

Արյունալի շաբաթից հետո ֆրանսիական բանվորների դահիճներ Տիերն ու Գալիֆեն անողորմ դատաստան տեսան կոմունարների հետ՝ 30 հազար հոգի գնդակա-

հարվեց: 45 հազար հոգի դատապարտվեցին զինվորական դատարաններով: Կոմունարներից նրանք, ովքեր գնում էին դեպի հյուսիս-արևելք և կարծում էին ապաստարան գտնել այնտեղ դասավորված գերմանական «չեզոք» զորքերի մոտ,— գերմանացիների կողմից գնդակահարվում էին կամ հանձնվում վերսալցիներին՝ հոշոտելու համար:

Կոմունայի փորձը խոր կերպով և բազմակողմանիորեն ուսումնասիրել են համաշխարհային պրոլետարիատի առաջնորդներ Լենինն ու Ստալինը:

Հենվելով Փարիզի Կոմունայի դրական փորձի վրա, բոլշևիկյան կուսակցությունը, Լենինի և Ստալինի ղեկավարությամբ, հաշվի առավ նրա պատմական դասերը և խուսափեց նրա սխալներից:

Կոմունայի դահիճները չարաչար սխալվեցին, կարծելով, թե երկար ժամանակով ճնշեցին հեղափոխական շարժումը: Կոմունարների հերոսական պայքարը միլիոնավոր բանվորների վոգեշնչեց նոր պայքարի:

«Սոցիալիստական նոր սերունդը,— գրում էր Լենինը,— հարստացած իր նա-



խորդների փորձով, ամենևին չվհատած նրանց պարտությամբ, բարձրացրեց Կոմունայի մարտիկների ձեռքից ընկած դրոշը և այն վստահ ու համարձակ առաջ տարավ, գոչելով՝ «Կեցցե՛ սոցիալիստական հեղափոխությունը», «Կեցցե՛ Կոմունան»:

## ԿՈՄՈՒՆԱՅԻ ԳՈՐԾԸ ՀԱՂԹԱՆԱԿԵՑ ԽՍՀՄ-ՈՒՄ

Կոմունայի մեծ նվաճումները և նրա սխալները դաս հանդիսացան, վորոնցով դաստիարակվեց բանվոր դասակարգը, պատրաստվելով հետագա մարտերի:

«Կոմունան յեվրոպական պրոլետարիատին սովորեցրեց,— գրում է Լենինը,— կոնկրետ կերպով դնել սոցիալիստական հեղափոխության խնդիրները»:

46 տարի հետո Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը մեր յերկրում իրագործեց պրոլետարիատի դիկտատուրան Խորհուրդների ձևով:

«Փարիզի Կոմունան,— ասում է ընկեր Ստալինը,— հանդիսացավ այդ ձևի սաղմը: Խորհրդային Իշխանությունը հանդի-

սանում է նրա զարգացումը և կատարելագործումը»:

Կոմունայի փորձը պերճախոս կերպով ապացուցեց, որ պրոլետարիատը չի կարող հաղթել և իշխանությունն իր ձեռքում պահել, յեթե նա չունի հեղափոխական թեորիայով զինված, միաձույլ, բանվոր դասակարգի հետ սերտորեն կապված կուսակցություն:

Առանց «...պրոլետարների իշխանությունը գրավելու պայքարի տանելու համար բավականաչափ համարձակ, հեղափոխական իրադրության բարդ պայմաններն ըմբռնելու համար բավականաչափ փորձված, և նպատակի ճանապարհին յեղած բոլոր և ամեն տեսակի ընդջրյա խութերը շուրջանցելու համար բավականաչափ ճկուն հեղափոխական կուսակցության... չէր էլ կարելի մտածել իմպերիալիզմը տապալելու, պրոլետարիատի դիկտատուրա նվաճելու մասին» (Ստալին):

Այդպիսի կուսակցությունը, նոր տիպի կուսակցությունը, բոլշևիկյան կուսակցությունը ստեղծվեց Լենինի և Ստալինի կողմից՝ բանվոր դասակարգի բոլոր և ամ-



են տեսակ թշնամիների դեմ մղվող պայքարում:

Լենինի_Ստալինի կուսակցությունը ղեկավարեց բանվոր դասակարգին և նրան հաղթանակի հասցրեց 1917 թվի Հոկտեմբերին:

«... Մի կուսակցության, կոմունիստների կուսակցության անբաժան ղեկավարությունը, որպես Հոկտեմբերի նախապատրաստման հիմնական մոմենտ,— այս է Հոկտեմբերյան հեղափոխության բնորոշ գիծը, այս է բոլշևիկների տակտիկայի առաջին առանձնահատկությունը Հոկտեմբերի նախապատրաստման ժամանակաշրջանում:

Հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ առանց բոլշևիկների տակտիկայի այս առանձնահատկության՝ պրոլետարիատի դիկտատուրայի հաղթությունն իմպերիալիզմի պայմաններում անհնարին կլիներ:

Հոկտեմբերյան հեղափոխությունը սրանով շահեկանորեն տարբերվում է 1871 թվին Ֆրանսիայում յեղած հեղափոխությունից, որտեղ հեղափոխության ղեկավարությունը բաժանում էյին իրենց միջև յերկու կուսակցություններ, որոնցից ոչ

մեկին կոմունիստական կուսակցություն չի կարելի անվանել» (Ստալին)։

Լենինի–Ստալինի կուսակցությունը բանվոր դասակարգին հասցրեց քաղաքացիական պատերազմի հաղթանակներին, սոցիալիզմի հաղթանակին, և ԽՍՀՄ ժողովուրդներին համարձակ ու վստահ տանում է դեպի կոմունիզմի բարձունքները։

ԽՍՀՄ-ում 2-րդ հնգամյակի տարիներին լուծված է պատմական հիմնական խնդիրը— վերջնականապես վերացվել են բոլոր շահագործական դասակարգերը և վոչնչացվել են շահագործում ծնող պատճառները։ ԽՍՀՄ-ն թևակոխել է սոցիալիստական հասարակության շինարարության ավարտման և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը։ Ստալինյան 3-րդ հնգամյակը նոր վիթխարի քայլ է նշանավորում կոմունիզմի լիակատար հաղթության ճանապարհին։

Կոմունայի փորձը սովորեցնում է, վոր բարեհոգի վերաբերմունքը դեպի թշնամին— ճակատագրական սխալ է, վորը պարտության կտանի պրոլետարիատին։

Կոմունայի անբավարար վճռականությունը հակահեղափոխության և Փարի-



զի ներսում լքված քայքայիչ աշխատանքը ճնշելու գործում՝ հանդիսացավ Կոմունայի պարտության կարեվորագույն պատճառներից մեկը։

Լենինի–Ստալինի կուսակցությունը սովորեցնում է անողոք լինել դեպի բանվոր դասակարգի թշնամիները, մերկացնել, բոլոր բներից և ճեղքերից արմատախիլ անել, վոչնչացնել նրանց։ Անհաշտությունը, անողոքությունը դեպի թշնամին հանդիսանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակի կարեվորագույն պայմաններից մեկը։ Հաշվի առնելով Կոմունայի փորձը, Լենինի–Ստալինի կուսակցությունն ստեղծեց հատուկ որգան— պրոլետարիատի դիկտատուրայի հատու սուրը՝ ՎՉԿ–ՄՊՔՎ–ՆԳԺԿ-ն։

Կոմունայի սխալը նաև այն է, վոր նա չբռնագրավեց Ֆրանսիական բանկի միջոցները, վորտեղ պահվում էյին բուրժուազիայի հսկայական կապիտալները։ Խորհրդային Իշխանության առաջին միջոցառումներից մեկը հանդիսացավ բանկերի և արտադրության բոլոր միջոցների ու գործիքների՝ գործարանների, ֆաբրիկների,

կալվածատիրական հողերի և այլն ազգայնացումը:

Կոմունայի փորձը ցույց տվեց բանվոր դասակարգի դաշինքի անհրաժեշտությունը գյուղացիության հետ. Կոմունան չկարողացավ կապ հաստատել գյուղացիության հետ:

«Ֆրանսիայի 48 և 71 թվերի հեղափոխությունները կործանվեցին գլխավորապես նրա համար, որ գյուղացիական ռեզերվներն պոկվեցին բուրժուազիայի կողմը»: (Ստալին):

Այդ փորձը լրիվին հաշվի յե առնված Լենինի-Ստալինի կուսակցության կողմից: Պրոլետարիատի դիկտատուրայի հիմնական սկզբունքը,— սովորեցնում է լենինիզմը,— հանդիսանում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի պահպանումը: Այդ սկզբունքը լրիվին կենսագործված է կյանքում Լենինի-Ստալինի կուսակցության կողմից:

Կոմունայի փորձը ցույց տվեց, որ բուրժուազիան դիմում է ամեն տեսակ հանցագործությունների, դավաճանում է հայրենիքին, օգնություն է կանչում օտարերկրյա պետության զորքերին, որոնց



դեմ մինչև հեղափոխությունը պատերազմ էր մղում: Բուրժուազիան պրոլետարական ապստամբության դեմ—հանդիման օգնության է կանչում օտարերկրյա զորքերին «...իր հայրենակիցներին – իշխանության վրա ձեռք բարձրացնել հանդգնած պրոլետարներին ճնշելու համար» (Լենին):

Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը և աշխատավորական մասսաները մեր հայրենիքը մաքրեցին սպիտակ գվարդիականներից և օտարյերկրյա ինտերվենտներից և ստեղծեցին լավ կազմակերպված, կարգապահ, ժամանակակից ձևով մարզված և տեխնիկապես հագեցված Կարմիր Բանակ ու Կարմիր Ծովային Նավատորմ, որոնք պատրաստ են հետ մղելու թշնամու ամեն մի հարձակում և թշնամուն հարվածելու այն տերիտորիայում, որտեղից նա յեկել է:

Մեր կուսակցությունը, Լենինի-Ստալինի կուսակցությունը, ղեկավարելով Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը, ռուսական և միջազգային բուրժուազիայի դեմ մղված քաղաքացիական պատերազմը,

սոցիալիստական Մեծ կառուցումը, հենվելով Կոմունայի փորձի վրա, չկրկնեց Կոմունայի թույլ տված սխալները և ապահովեց սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում:

## ԱՃՈՒՄ Է ՀԱԿԱՀԱՐՎԱԾԸ ՖԱՇԻԶՄԻՆ

Փարիզի Կոմունան առաջին հարվածը հասցրեց կապիտալիզմին: Պրոլետարական Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը՝

«... համաշխարհային կապիտալիզմին մահացու վերք հասցրեց, վորից նա այլևս յերբեք չի բուժվի (Ստալին):

Պրոլետարական Մեծ հեղափոխությունն աշխարհը բաժանեց յերկու սկզբունքային տարբեր սիստեմների՝ հաղթական սոցիալիզմի սիստեմի և պառաված, փտող կապիտալիզմի սիստեմի:

Սոցիալիզմը հաղթանակեց յերկրագնդի մեկ վեցերորդ մասում: 5/6-րդ մասում բուրժուազիան դեռևս պահպանել է իր տիրապետությունը: Գազանային ատելություն տածելով դեպի սոցիալիզմի յերկիրը, կապիտալիստական պետությունները



և առաջին հերթին ֆաշիստական պետությունները տենդագին կերպով հակահեղափոխական պատերազմ են պատրաստում Խորհուրդների յերկրի դեմ: Պատերազմի ֆաշիստական հրձիգները յերազում են խորհրդային տերիտորիաները նվաճելու, մեր մեծ ժողովրդին ստրկացնելու և սոցիալիզմի նվաճումներն արյան մեջ խեղդելու մասին: Վորպես իրենց յեռանդուն գործակալների ֆաշիզմն օգտագործում է տրոցկիստական — բուխարինական բանդիտներին, լրտեսներին ու դիվերսանտներին, վորոնք պատրաստ են ամեն տեսակ հանցագործություն կատարելու:

Սոցիալիզմի յերկիրը գտնվում է կապիտալիստական շրջապատման մեջ:

«... Մենք շրջապատված ենք,— գրել է Լենինը,— մարդկանցով, դասակարգերով, կառավարություններով, վորոնք բացե ի բաց մեծագույն ատելություն են տածում դեպի մեզ: Հարկավոր է հիշել, վոր ամեն մի արշավանք մեր դեմ մազից է կախված»:

Պատերազմի մրրկաբեր ամպերը կախվել են աշխարհի վրա: Ֆաշիստական բարբարոսներն արդեն սկսել են արյունալի պա—

տերազմը: «Երկրորդ իմպերիալիստական պատերազմը գործնականում արդեն սկսվել է... Պատերազմը տեղի յէ ունենում հսկայական տարածության վրա Ջիբրալթարից մինչև Շանհայ: Պատերազմն արդեն կարողացել է իր ոլորտի մեջ քաշել ավելի քան կես միլիարդ բնակչություն»:*) Հակակոմունիստական բլոկի, յերեք ագրեսորների՝ Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի բլոկի կազմակերպումը հաջորդեց Ինտերվենցիայի՝ Իսպանիայի դեմ, Ավստրիայի բռնագրավմանը, Չեխո-Սլովակիայի անդամահատմանը: Այս բոլոր փաստերը ցույց են տալիս, որ Ֆաշիստական յերկրները ձըգտում են տիրապետող դիրք գրավել Արևմըտյան Եվրոպայի կոնտինենտում, հարված հասցնել և՛ Ֆրանսիային և՛ Անգլիային, և վերջին հաշվով հակահեղափոխական պատերազմ նախապատրաստել ՍՍՀՄ-ի — համաշխարհային պրոլետարական հեղափոխության հենարանի, ամբողջ պրո-

---

*) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց» էջ՝ 318:



գրեսիվ մարդկության հենարանի դեմ:

Ֆաշիստական յերկրների պատերազմի նախապատրաստությունը և պատերազմը ծանր կերպով անդրադարձել են այդ յերկրների եկոնոմիկայի և աշխատավորության վիճակի վրա:

Խիստ ուժեղացել է մասսաների շահագործումը, աղքատությունը և սովը: Կապիտալիստական և առանձնապես Ֆաշիստական յերկրներում օրից- օր աճում է մասսաների դժգոհությունը Ֆաշիստական դիկտատուրայի դեմ:

Ֆաշիստները ձգտելով պահպանել իրենց տիրապետությունը, բարբարոսաբար ճընշում են աշխատավորության դժգոհության ամենափոքր արտահայտությունը: Ֆաշիստների գազանությունները խիստ գերազանցել են Տիերի և Գալիֆեյի դահճային գործողություններից: 11 տարվա ընթացքում (1925- 1935 թ. թ.) համարյա 13 միլիոն հոգի զոհ են գնացել սպիտակ տեռորին:

***

Աճում և ամրապնդվում են խաղաղության ուժերը, աճում է բանվոր դասա-

կարգի և աշխատավոր մասսաների ընդդիմադրությունը ֆաշիստական ագրեսիայի, ֆաշիզմի և պատերազմի դեմ:

Ճնշման, շահագործման և աղքատության դեմ պայքարի կարմիր դրոշը, վորը 1871 թվին բարձրացրին Փարիզի կոմունարները, հաստատ փողփողում է երկրագնդի մեկ — վեցերորդ մասում — ԽՍՀ Միության մեջ: Այն գործը, վորի համար պայքարում էր Փարիզի Կոմունան, հաղթանակել է մեր երկրում, Լենինի-Ստալինի դրոշի ներքո, բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ: Սոցիալիզմի հաղթանակը ԽՍՀՄ-ում վոչ միայն Խորհրդային Միության աշխատավորության հաղթանակն է,— դա ամբողջ միջազգային պրոլետարիատի, ամբողջ աշխարհի աշխատավորության նվաճումն է:

ԽՍՀՄ-ն վորպես հզոր փարոս լույս է տալիս բոլոր կեղեքվածներին և շահագործվողներին, նրանց ցույց տալով դեպի իրենց ազատությունը, դեպի երջանիկ կյանք տանող ուղին:

Սոցիալիզմի հաղթանակը ԽՍՀՄ-ում, նրա անչափ աճած քաղաքական, տնտեսական և ռազմական հզորությունը, խորհրդ-



դային ժողովրդի բարոյական և քաղաքական միասնությունը, կոմունիստների և անկուսակցականների բլոկի հաղթանակը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների ժամանակ, ճապոնացիների ջախջախումը Խասան լճի մոտ — ահեղ նախազգուշացում են հանդիսանում պատերազմի պրովոկատորներին և հրձիգներին:

Միասնական պրոլետարական և ժողովրդական ճակատ ստեղծելու ու ամրապնդելու շարժումն աճում է բոլոր երկրներում: Հակաֆաշիստական ուժերին համախմբելու գործում ամենամեծ հաջողությունների հասել են Ֆրանսիայի, Իսպանիայի և Չինաստանի պանծալի կոմկուսակցությունները: Իսպանական հերոսական և չինական մեծ ժողովուրդներն ամբողջ աշխարհին ցույց են տալիս ժողովրդական ճակատի ուժը՝ ֆաշիստական զինված ագրեսիային վճռական հակահարված տալու գործում:

Իսպանական ժողովուրդը, հակառակ բուրժուական դեմոկրատիայի երկրների ռեակցիոն շրջանների և կառավարությունների կամքի ու ցանկության, չնայած ագ-

լեարների նկատմամբ ցուցաբերված թողտվությամբ և զիջողականությամբ, հերոսաբար պաշտպանելով իր անկախությունը փաշիստական ինտերվենտների դեմ, ամրապնդում է իր ժողովրդական բանակը և երկրի պաշտպանունակությունը:

Իսպանական ժողովրդի հաջողություններն ու հաղթանակներն արդյունք են Իսպանիայի հերոսական կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նրա մղած համառ և հերոսական պայքարի:

Իսպանիայի կոմունիստական կուսակցությունը մեծ ազդեցություն է վայելում իսպանական աշխատավոր մասսաների մեջ:

Իսպանական հերոսական, ազատասեր ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ե՛լ ավելի կամրապնդի ժողովրդական ճակատի շարքերը, կհաղթահարի բոլոր դժվարությունները և հաղթանակով դուրս կգա, կոչնչացնի փաշիզմը:

Չինական մեծ ժողովուրդը կրծքով պաշտպանում է իր անկախությունը ճապոնական հափշտակիչների դեմ:

Ճապոնական փաշիստները, վորոնք առանց պատերազմ հայտարարելու հարձակ–



վել են Չինաստանի վրա, ձգտում են գրավել նրա հսկայական տերիտորիան և ըստրկացնել նրա 400 միլիոնանոց ժողովուրդը: Ճապոնական հափշտակիչները հանդիպեցին չինական ժողովրդի վճռական ընդիմադրությանը:

Չինաստանի ժողովուրդներն ավելի ու ավելի սերտորեն համախմբվում են ճապոնական հափշտակիչների դեմ պայքարելու համար: Նրանք լի են իրենց յերկիրը ճապոնական զինվորականության բանդաներից մինչև վերջը մաքրելու պայքարի վճռականությամբ:

Կոմունիստական կուսակցության քաղաքականությունը վճռական դեր խաղաց Չինաստանի բոլոր ուժերի համախմբման գործում՝ ճապոնական հափշտակիչների դեմ պայքարելու համար:

Չինաստանի կոմկուսակցության լոզունգը յերկարատև պատերազմի և ժողովրդի բոլոր ուժերի մոբիլիզացիայի մասին՝ ճապոնացիներին վերջնականապես ջախջախելու համար—արժանացավ հայրենիքի բոլոր պատրիոտների, բոլոր հակաճապոնական կազմակերպությունների հավանությանը:

Չինական ժողովրդի ուժն ու ընդդիմադրությունը աճում է: Ճապոնական ֆաշիստների հաշիվները՝ Չինաստանը 3–4 ամսում ստրկացնելու մասին՝ վիժեցին:

Միջազգային պրոլետարիատը և ամբողջ առաջավոր պրոգրեսիվ մարդկությունը չին ժողովրդի կողմն են: Առաջավոր մարդկությունը վրդովված է ճապոնական զինվորականության հանցագործ ներխուժումից դեպի Չինաստան և բացեի բաց համերաշխում է չինական քաջարի մեծ ժողովրդի հետ, որն իր իսպանական եղբայրների նման պայքարում է ոչ միայն իր անկախության համար, այլև խաղաղության և ազատության գործի համար, պրոգրեսի ու դեմոկրատիայի գործի համար՝ ամբողջ աշխարհում:

Միասնական պրոլետարական և ժողովրդական ճակատի ամրապնդման գծով մեծ հաջողությունների յե հասել Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը: Ֆրանսիայի կոմկուսակցության կայուն, հետեվողական դիրքն ապահովեց ժողովրդական ճակատի հաղթանակը նրա բոլոր թշնամիների վրա: Ֆրանսիայի կոմկուսակցությունն անդուլ կերպով մերկացնում է



ֆրանսական ռեակցիոներների և հիտլերյան գործակալների ոտնաձգությունները ժողովրդական հակաֆաշիստական ճակատի դեմ: 1938 թվի նոյեմբերի 30-ի ընդհանուր գործադուլը, որն անցկացվեց ի նշան բողոքի արտակարգ դեկրետների դեմ, ցույց տվեց Ֆրանսիայի բանվոր դասակարգի լիակատար վճռականությունը՝ պայքարելու հանուն ձեռք բերված նվաճումների:

Հասունանում են համաշխարհային պրոլետարական հեղափոխության ուժերը, աճում են ֆաշիզմի և պատերազմի դեմ մղվող պայքարի ուժերը. «Ինչ գնով էլ լինի փակել ֆաշիզմի ճանապարհը բուրժուական-դեմոկրատական երկրներում, տապալել ֆաշիզմն այնտեղ, որտեղ նա գտնվում է իշխանության գլխին, ընդհանուր խաղաղությունը պաշտպանել պատերազմի ֆաշիստական հրձիգներից» (Դիմիտրով) — այս է խնդիրը, որը լուծում և կլուծի Կոմունիստական Ինտերնացիոնալի կողմից ղեկավարված միջազգային պրոլետարիատը:

# ՄՈՊՐԸ ՅԵՎ ԱՇԽԱՐՀԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆԸ

Ֆաշիզմի և պատերազմի դեմ, ի պաշտպանություն դեմոկրատիայի և խաղաղության մասսաների լայն շարժման մեջ մշտական, մասնակցություն է ունենում ՄՈՊՐ-ը։ Կապիտալիստական յերկրներում ՄՈՊՐ-ի կազմակերպությունները հետեվում են ընկեր Դիմիտրովի ցուցումներին, վոր նա տվել է Կոմունիստական Ինտերնացիոնալի 7-րդ կոնգրեսում՝ ՄՈՊՐ-ը աշխատավորության, իսկական մասսայական կազմակերպություն դարձնելու մասին, վորը պրոլետարական և հակաֆաշիստական շարժման մարտիկներին օգնություն ցույց տալու շուրջը համախմբում է բնակչության լայն խավերին։ ՄՈՊՐ-ը չի դադարեցնում իր պայքարը հարյուր հազարավոր հեղափոխականներին և հակաֆաշիստական մարտիկներին ֆաշիզմի զնդաններից ազատելու համար։

ՄՈՊՐ-ի կազմակերպությունների առաջ կանգնած հիմնական խնդիրը — հանրա-



պետական Իսպանիայի կանանց ու յերեխաներին, Իսպանիայի հիվանդ ու վիրավոր մարտիկներին, ինչպես նաև չինական ժողովրդին օգնություն ցույց տալն է։

ՄՈՊՐ-ի կազմակերպությունները դեմոկրատական յերկրներում և նույնիսկ ֆաշիստական յերկրներում, մյուս հասարակական կազմակերպությունների հետ միասին, միջոցների, իրերի և պարենի հանգանակություններ են կատարում իսպանական ժողովրդի համար, ժողովներ և յելույթներ են կազմակերպում ի պաշտպանություն իսպանական ժողովրդի՝ ընդդեմ ֆաշիստական ինտերվենտների։

ՄՈՊՐ-ը չի դադարեցնում պայքարն ընկեր Թելմանի ազատման համար, վորը խիստ մեկուսացման մեջ է գտնվում Հաննովերի բանտում։ ՄՈՊՐ-ը հասարակական կարծիքը վոտքի յե հանում պայքարելու ֆինլանդական ժողովրդի քաջարի մարտիկ Տոյվո Անտիկայնենի, Ռումինայի աննկուն կին հեղափոխական Աննա Պաուկերի, ֆաշիստական Իտալիայի կալանավոր Տերրաչինիի և ֆաշիստական զնդաններում տառապող հարյուր հազարավոր հեղափոխական մարտիկների ազատման համար։

ՄՈՊՐ-ի կազմակերպության «Աշխատանքի պաշտպանություն» ամենահամառ պայքարը ԱՄՆ-ում, որը պաշտպանվեց աշխարհի աշխատավորության համերաշխությամբ, հարկադրեց ազատ արձակել Սկոտսբորոյի ինն անմեղ դատապարտյալ պատանիներից հնգին: Հունվարի սկզբին ՄՈՊՐ-ի և բոլոր յերկրների պրոգրեսիվ հասարակայնության բազմամյա պայքարի շնորհիվ ազատ արձակվեց Թոմ Մունին: Բազմաթիվ տարիների ընթացքում Խորհրդային յերկրի և ամբողջ աշխարհի աշխատավորներն իրենց ձայնը բարձրացնում եյին հօգուտ Թոմ Մունիի պաշտպանության: Նրա ազատումը դեմոկրատիայի ուժերի հաղթանակն է:

Մեծ են մեր յերկրի աշխատավորության ինտերնացիոնալ համերաշխության զգացմունքները: ԽՍՀՄ ՄՈՊՐ-ի աշխատանքի գլխավոր առաջատար սկզբունքը հանդիսանում են ընկեր Ստալինի ցուցումները, թե «անհրաժեշտ է ուժեղացնել և ամրապնդել ԽՍՀՄ բանվոր դասակարգի պրոլետարական ինտերնացիոնալ կապերը բուրժուական յերկրների բանվոր դասակարգի հետ»:

Կատարելով այդ ցուցումները, ՄՈՊՐ-ն



աշխատանք է ծավալում աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության նրանց՝ կապիտալիստական պետություններում ֆաշիզմի և իմպերիալիստական պատերազմի դեմ մղվող հեղափոխական պայքարին ծանոթացնելու ուղղությամբ: Այդ բանը պահանջում է ՄՈՊՐ-ի ակտիվիստների շարքերից պատրաստել և առաջ քաշել քաղաքականապես կոփված և ստուգված ագիտատորներ, պրոպագանդիստներ, զրուցարարներ: ՄՈՊՐ-ի կոմիտեները պետք է օժանդակեն ակտիվի քաղաքական մակարդակի բարձրացմանը՝ դասախոսություններ ու զեկուցումներ, դասընթացներ ու սեմինարներ կազմակերպելով:

ԽՍՀՄ ՄՈՊՐ-ը ներկայումս 9,333,000 անդամ ունի:

Իր գոյության 16 տարվա ընթացքում ԽՍՀՄ-ի ՄՈՊՐ-ն անդամավճարների և կամավոր մուծումների միջոցով հավաքել է 153, 092, 000 ռուբլի: Նա օգնություն է ցույց տվել հարյուրավոր և հազարավոր հեղափոխական մարտիկների, քաղաքական եմիգրանտների, հեղափոխության մարտիկների յերեխաների: ԽՍՀՄ ՄՈՊՐ-ի միջոցներով հեղափոխության մարտիկների

յերեխաների համար 2 մանկատուն ե կառուցվել և պահվում։

ՄՈՊՐ-ի դաստիարակչական աշխատանքի ուժեղացումը, նրա կազմակերպական ամրապնդումը, ՄՈՊՐ-ի մի շարք կազմակերպություններում կատարված վնասարարության հետեվանքների ամենաարագ վերացումը — կապահովեն ԽՍՀՄ ՄՈՊՐ-ի ամենապատասխանատու խնդրի կատարումը՝ մեր յերկրի աշխատավորության ինտերնացիոնալ կապերի ամրապնդումն իր արտասահմանյան յեղբայրների հետ։

Մարտի 18-ին, ՄՈՊՐ-ի օրը, մենք մեր յերկրի աշխատավորությանը հիշեցնում ենք Կոմունիստական Ինտերնացիոնալի ղեկավար ընկ. Դիմիտրովի ջերմ կոչը։

> «Մտեք հեղափոխության մարտիկների օգնության միջազգային կազմակերպության շարքերը, ամեն կերպ պաշտպանեցեք ՄՈՊՐ-ի գործը, վորովհետև դա ամբողջ աշխատավոր մարդկության գործն ե։ Պաշտպանեցեք ՄՈՊՐ-ի գործը, վորովհետև դրա մեջ դրված ե Փարիզի Կոմունայի վողին, վորը Հոկտեմբերյան հեղափոխության միջոցով հաղթեց յերկրագնդի 1/6 մասում»։

# ԷՌՆՍՏ ԹԵԼՄԱՆ

1939 թվի մարտի 3-ին լրանում ե վեց տարին, վոր ֆաշիստական բանտում տանջվում ե ընկեր Էռնստ Թելմանը— Գերմանական կոմունիստական կուսակցության առաջնորդը։ Տրոցկիստական լրտեսների դավաճանությունը ֆաշիստական վոստիկանության ձեռքը մատնեց նրան։

Էռնստ Թելմանը ձերբակալվեց Ռայխստագի պրովակացիոն հրդեհումից անմիջապես հետո։ Ֆաշիստական մամուլը հայտարարեց, վոր նա մեղսակից ե այդ հրդեհման, վորն, իբրթե, պետք ե ապստամբության ազդանշան լիներ։ Ֆաշիստական հետաքննիչը հետագայում փորձում եր այդ հիման վրա կառուցել իր մեղադրանքը։ Սակայն ընկ. Թելմանի դեմ ուղղված այդ ամբողջ սուտ մեղադրանքը վերջնականապես ջարդուփշուր ար

վեց Լայպցիգի դատավարության ժամանակ՝ ընկ. Դիմիտրովի համարձակ ելույթով: Ինքն Եռնստ Թելմանը իր հերոսական վարքով բանտում և հետաքննիչի առաջ՝ նույնպես ջախջախեց ֆաշիստների սուտ մեղադրանքը:

Երբ ֆաշիստները տեսան, վոր այդ հիման վրա չի հաջողում դատ բաց անել Թելմանի դեմ, նրանք թխեցին նոր մեղադրանք: Ֆաշիստական արդարադատության մինիստրը հրապարակով ընկեր Թելմանին մեղադրեց այն բանի մեջ, վոր նա մինչև Հիտլերի իշխանության գլուխն անցնելը բարոյապես դրդել ե սպանել ֆաշիստներին: Ֆաշիստները մի ամբողջ շարք դատեր կազմակերպեցին կոմունիստների դեմ, վորոնք, իբրթե, մասնակցել եյին ֆաշիստական բանդիտների և բանվորների միջև ծագած ընդհարումներին: Գեստապոն «վկաներ» —կաշառված քրեական հանցագործներ— եր հանդես բերում, վորոնք ցուցմունք եյին տալիս, վոր այդ կոմունիստները, իբրթե, մեղսակից են ֆաշիստների սպանություններին: Մահվան դատավճիռներ հանվեցին: Այդ վոստիկանական և դատական հանցագործու-



թյունները ֆաշիստական կառափնարան տարան շատ բանվորների— կոմկուսակցության ակտիվիստների: Այդպիսի միջոցներով ֆաշիստական «արդարադատությունը» փորձում եր «ապացուցել», վոր, իբրթե, գերմանական կոմկուսակցությունը կողմնակից ե անհատական տեռորի, և դրա բարոյական պատասխանատվությունը դընել Եռնստ Թելմանի վրա: Ֆաշիստական արդարադատության մինիստրը Թելմանին անվանեց 400 հիտլերականների սպանության «բարոյական դրդիչը»:

Եռնստ Թելմանը յեռանդուն պայքար մղեց այդ նախամտածված դատական հանցագործության դեմ: Գերմանական կոմկուսակցությունը ամբողջ համաշխարհային հասարակական կարծիքը մոբիլիզացիայի յենթարկեց ֆաշիստների պլանի դեմ, վորոնք մտադրվել եյին այդպիսի յեղանակով «օրինականորեն» մահացնել ընկ. Թելմանին: Ֆաշիստները չկարողացան դատավարություն սկսել Թելմանի դեմ: Այդպիսի դռնփակ դատավարություն նրանց չեր հաջողվի կազմակերպել: Դռնբաց դատավարության համար ել նրանք սիրտ չեյին անում: Նրանք

շատ լավ հասկանում եյին, որ գերմանական աշխատավորության առաջնորդի դեմ կազմակերպված դատավարությունն ամբողջ աշխարհի մասսաներին ել ավելի մոբիլիզացիայի կենթարկի ֆաշիզմի դեմ Գերմանական կոմկուսակցությունն այդպիսի դատավարության հետևանքով ել ավելի մեծ ժողովրդականություն և հեղինակություն ձեռք կբերեր: Դրա համար եր ֆաշիստներն ստիպված յեղան հրաժարվել դատավարությունից: Նրանք առանց դատավճռի Եռնստ Թելմանին պահում են բանտում:

Հեղափոխականներին դատով սպանելու գործերի մեջ փորձված ֆաշիստական «հետաքննիչը», ըստ յերևույթին, շատ շուտ հասկացավ, որ հնարավոր չե Եռնստ Թելմանի դեմ մեղադրանք թխել, որը բավարարեր ֆաշիստական կառավարությանը: Դրա համար ել Եռնստ Թելմանը հանձնվեց Գեստապոյի ձեռքը՝ «հարցաքննության» համար և անողոք տանջանքների յենթարկվեց: Ֆաշիստական չորս դահիճներ, քրեական գործերի ֆա-



շիստական գլխավոր կոմիսարի հրամանով, «հարցաքննության» ժամանակ ռետինե մահակներով և մտրակով անխնա ծեծեցին ընկեր Թելմանին: Թելմանն ամբողջությամբ արյունաշաղախ յեղավ և հարվածներ ստացավ սրտին, որից յերկար ժամանակ հիվանդացավ:

Ֆաշիստներն Եռնեստ Թելմանից վախենում են նաև բանտում: Ֆաշիստական իշխանությունները չեն վստահում նույնիսկ իրենց բանտային աստիճանավորներին, մի անգամ ձերբակալեցին բանտային 20 ծառայողներ և նրանցից մեկը, որը ցանկացել եր մեղմացնել Թելմանի նկատմամբ ցուցաբերված ամարդի վերաբերմունքը, սպանվեց Գեստապոյի բանդիտների կողմից: Թելմանի հսկողությունը հանձնարարված ե ֆաշիստական «պահնորդական ջոկատներից» ջոկված հատուկ պահնորդականների: Թելմանին խիստ մեկուսացման մեջ են պահում: Նույնիսկ ամենօրյա կարճատև պտույտները բանտի բակում ընկ. Թելմանը կատարում ե միայնակ:

Այն բանից հետո, յերբ 1934 թվին

Սաարի բանվորական պատվիրակությանը թույլ տրվեց յերկու րոպեյով տեսակցություն ունենալու ընկ. Թելմանի հետ և համաշխարհային հասարակայնությունն առաջին անգամ իմացավ գերմանական բանվորների առաջնորդի հետ անողոքաբար վարվելու մասին, Գեստապոն ոտարերկրյա ժուռնալիստներին հայտարարեց, վոր այլևս Թելմանի մոտ վոչ վոքի թույլ չեն տա գնալու: Այդ ժամանակվանից ֆաշիստները հրաժարվում են վորևե այցելություն թույլ տալուց: Եռնստ Թելմանի համար գրքեր, ժուռնալներ և թերթեր ստանալու բոլոր փորձերը զուր անցան: Ֆաշիստները մերժեցին նաև բժիշկների, մասնավորապես ոտարերկրյա բժիշկների, բոլոր առաջարկությունները՝ ընկ. Թելմանին բժշկական ոգնություն ցույց տալու մասին:

Ֆաշիստական բանտապետները, յերկարատև պայքարից հետո, Եռնստ Թելմանին թույլ են տվել Մոաբիտի բանտում ստանալու միայն մեկ թերթ — ֆաշիստական «Բորսային լրագիրը»: Սակայն այդ ֆաշիստական թերթերից ել նրանք շատ բան կտրում— հանում են, վորպեսզի Թել-



մանը չկարողանա կողմնորոշվել յերկրագնդի քաղաքական իրադարձությունների մեջ:

Բեռլինի պրոլետարիատը, ամբողջ յերկրի պրոլետարիատի գլուխն անցած, անդուլ կերպով և բազմազան ձևերով իր բողոքն է հայտնել Թելմանի հետ այդպես անողոք վարվելու դեմ: Նույնիսկ ֆաշիստական տեռորի պայմաններում Բեռլինի բանվորները շարունակում են պայքարել նրա ազատագրության համար: Դրա համար ել ֆաշիստները ցանկալի չհամարեցին Թելմանին բանվորական Բեռլինում թողնելը: Անսպասելի կերպով գիշերով Թելմանին, ուժեղ պահակախմբի հսկողությամբ, Բեռլինից փոխադրեցին Հաննովեր: Նա այնտեղ առաջվա նման պահվում է բանտում, խիստ մեկուսացման մեջ:

Ամենքին պարզ է, վոր այն հոգեկան ու ֆիզիկական տանջանքները, վորոնց յենթարկել են ընկ. Թելմանին, կարող են քայքայել նույնիսկ ամենա ամուր առողջություն տեր մարդուն: Ֆաշիստների պլանն ել Թելմանի ֆիզիկական վոչնչացումն է: Յեթե այդ բանը մինչև որս

ֆաշիստներին չի հաջողվել, ապա սոսկ նրա համար, որ ընկ. Թելմանը կոմունիզմի գործի նկատմամբ այնպեսի վիթխարի համոզմունք ու հավատ ունի, որը մարդուն արիություն է ընդդիմադրելու ընդունակություն է տալիս: Յեվ յերբ հարցեն են տալիս, թե դեռ վտանգ սպառնու՞մ է Թելմանի կյանքին, պատասխանն ինքնին պարզ է: Ֆաշիստական ճիվաղները հրեական դաժան ջարդերով ամբողջ աշխարհին կրկին անգամ ցույց տվին, թե ինչպիսի գազանությունների յեն ընդունակ նրանք: Անկասկած է, որ նրանք ընդունակ են ամենադաժանային յեղանակով դատաստան տեսնելու անպաշտպան կալանավորների և առաջին հերթին գերմանական բանվորների սիրելի առաջնորդ Եռնստ Թելմանի հետ:

Քաղաքական պրովոկացիոն սպանություններ, քաղաքական անպաշտպան կալանավորների սպանություններ բազմիցս կատարվել են և այժմ էլ կատարվում են ֆաշիստների կողմից Գերմանայում: Բավական է հիշել Գյորինգի հրամանով գեստապոյի կատարած չորս ընկերների — Ջոննի Շերի, Եյուգին Շենխարի, Ռուդ



Շվարցի և Երիխ Շտեյնֆուրտի — չարանենգ սպանությունը Բեռլինի մոտակա անտառում, ինչպես նաև հակաֆաշիստների վերջերս տեղի ունեցած մահապատիժները:

Ի հարկե, Եռնստ Թելմանի կյանքին մշտական վտանգ է սպառնում: Սակայն ֆաշիստներն արդեն յերկու անգամ հակահարված են ստացել, յերբ նրանք փորձել են «դատով» սպանել Թելմանին: Ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը, պաշտպանելով Թելմանի պայքարը, փրկեցին նրա կյանքը: Եռնստ Թելմանի, և ֆաշիստական զնդաններում տառապող բազմաթիվ այլ մարտիկների ազատագրությունն անխզելիորեն կապված է ֆաշիզմի դեմ միջազգային բանվոր դասակարգի և ամբողջ պրոգրեսիվ մարդկության մղած պայքարին:

# ԹՈՄ ՄՈՒՆԻ

Երկու հարյուր հիսուն հազար ամերիկացիներ ցնծագին դիմավորեցին բանտից դուրս եկող ալեհեր մարդուն: Երկրի բոլոր ծայրերից ջերմ ողջույններ են ուղարկում նախկին «№ 31921 կալանավորին»:

Բանվորները, ֆերմերները, ուսանողները, ծառայողները միտինգի յեն հավաքվում Կալիֆորնիայի քաղաքներում: Շունչը պահած նրանք լսում են ամերիկյան բանվոր դասակարգի հիանալի մարտիկի խոսքերը:

ԱՄՆ-ի աշխատավորները տոնում են այն հաղթանակը, որը, վերջապես, պսակեց նրանց 22-ամյա պայքարը Թոմ Մունիի ազատման համար: Նրանց հետ միասին այդ հաղթանակը տոնում է ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը:



Ալեհեր մարդը, որի առաջ այժմ բացվեցին Սենկվենտինի բանտի դռները, այնտեղ մտավ երիտասարդ և կենսալի: Կապիտալիստները, որոնց դեմ նա պայքարում էր, ուզում էին նրան կենդանի-կենդանի թաղել:

Սակայն կապիտալիստների «արդարադատությունը» չընկճեց Թոմ Մունիին: Եվ 22-ամյա բանտարկությունից հետո յել նա պատրաստ է ակտիվորեն պայքարել հանուն բանվոր դասակարգի միասնության, ընդդեմ ֆաշիզմի:



Համաշխարհային իմպերիալիստական պատերազմի նախընթաց տարիներին ձուլող-բանվոր Թոմ Մունին ամբողջությամբ նվիրվեց պրոֆմիութենական աշխատանքի: Նա Կալիֆորնիայի ելեքտրաարդյունաբերության և տրամվայի բանվորներին կազմակերպում էր ձեռնարկատերերի դեմ պայքարելու համար, ղեկավարում էր գործադուլները: Կապիտալիստները խորապես ատում էին նրան և վորոշեցին բանտ նետել նրան: Դրա հա-

մար հարկավոր էր մեղադրանք թխել և ֆաբրիկանտները փող չխնայեցին։

Մի քանի տարի այդպիսի փորձեր ձեռնարկվեցին, սակայն նրանք բոլորն էլ զուր անցան։

1916 թվի հուլիսյան մի շոգ օր Սան-Ֆրանցիսկո քաղաքում հայրենասիրական ռազմական շքերթ կազմակերպվեց։ Տեղական շովինիստները ճիգ էին թափում, որ ԱՄՆ-ը համաշխարհային պատերազմի մեջ մտնի դաշնակիցների կողմը։ Փողոցները լեփ-լեցուն էին ժողովրդով։

Եվ ահա ժամը 2 անց 06 րոպեին Ստյուարտ և Մարկեր փողոցների անկյունում ռումբ պայթեց բազմության մեջ, որ նետել էին վարձու պրովակատորները։ 10 ցուցարարներ տեղնուտեղը սպանվեցին, 40 հոգի վիրավորվեցին։

Թոմ Մունին պայթյունի տեղից շատ հեռու յեր գտնվում —տասը թաղամաս այն կողմ, մի տան կտուրին։ Այդտեղից նա դիտում էր շքերթը։ Նրա հետ էին նրա կինը, նրա ընկերը պրոֆմիութենական աշխատանքի գծով՝ Բիլլինգսը և մի քանի բարեկամներ։



Որքան մեծ յեղավ Մունիի և Բիլլինգսի զարմանքը, յերբ ոստիկանությունը նրանց ձերբակալեց տեռորիստական ակտ կատարելու մեղադրանքով։

Սկսվեց դատը։ Կալիֆորնիայի իշխանությունները, ցանկանալով հաճոյանալ ձեռնարկատերերին, կեղծ վկաներ հանդես բերին։ Դրանք զանազան տականքներ էին-բանդիտներ և պոռնիկներ, որոնց դատախազ Ֆիկկերտը, խոշոր կապիտալի ծառան, դրամ էր խոստացել, իսկ սուտ վկայություն տալուց հրաժարվելու դեպքում սպառնում էր բանտարկել։

«Վկաները» ցուցմունք տվին, որ նրանք իբր թե սեփական աչքերով տեսել են, թե ինչպես Մունին ու Բիլլինգսը ավտոմոբիլով մոտեցել են պայթյունի տեղին, մայթի վրա դրել ռումբով լցված փոքրիկ ճամպրուկը ու գնացել։ Ցուցմունքները հակասական էին։

Թոմ Մունիի պաշտպանները, ընդհակառակը, նրա անմեղության անհերքելի ապացույցներ ունեին։ Մի սիրող լուսանկարիչ հարևան կտուրից նկարել էր շքերթը և նկարում յերևում էին Մունին ու նրա ընկերները, ինչպես նաև փողոցի ժամացույ-

ցը, որը ցույց էր տալիս ժամը 2 անց 04 րոպե:

Չնայած այն բանին, որ մեղադրանքը բացահայտորեն սուտ էր ու անապացույց, Թոմ Մունիին մեղավոր ճանաչեցին դիտավորյալ սպանության մեջ և մահվան դատապարտեցին:

Երբ դատավճռի լուրը տարածվեց, ամբողջ աշխարհի բանվորները խիստ վրդովվեցին: Բողոքների ալիքն անցավ ամբողջ երկրագունդով: Մեր պետրոգրադյան բանվորները նույնպես ցույց կազմակերպեցին ամերիկյան դեսպանության շենքի առաջ: 1918 թվի նոյեմբերի 28-ին ԱՄՆ-ի պրեզիդենտ Վիլսոնը, համաշխարհային հասարակական կարծիքի ճնշման տակ, Մունիի մահվան պատիժը փոխարինեց ցմահ բանտարկությամբ:



***

Ձգվեցին Թոմ Մունիի ազատման պահանջների ու պայքարի երկար տարիները: «№ 31921 կալանավորը» անդուլ կերպով ձգտում էր, որ վերանայվի իր գործը: Նրա պառավ մայրը շրջագայեց ամբողջ Ամերիկան և Եվրոպան, հանդես գալով իր զավակի պաշտպանության նպատակով մասսաներին մոբիլիզացիայի ենթարկելու համար: Հեղափոխության մարտիկների օգնության միջազգային կազմակերպության (ՄՈՊՐ-ի) կազմակերպած միտինգներում և ժողովներում: Նա մահացավ 1934 թվին, 85 տարեկան հասակում: Թոմ Մունիին թույլ չտվին ներկա գտնվելու նրա թաղմանը:

Կալիֆորնիական իշխանությունները բանվորական կազմակերպությունների ճնշման տակ հարկադրված եղան գործի վերանայում նշանակել: Շատ անգամ վերանայվեց Մունիի գործը: Ոստիկանության հյուսած կեղծ վկայությունների փաստաշենքը աստիճանաբար քանդվեց:

Մեղադրության գլխավոր «վկան» ոմն Ֆրանկ Օքսմենն էր: Նա իր բարեկամներից մեկին նամակ գրեց, որտեղ պատմեց, թե ինչպես ոստիկանությունը նրան հարկադրել է կեղծ վկայություն տալու, վճարելով շատ փող: Այդ նամակը հրապարակվեց թերթերում:

Մեկը մյուսի հետևից մյուս «վկաները» էլ հրաժարվեցին իրենց ցուցմունքներից և մերկացրին ոստիկանությանը, որը մե-

կին՝ կաշառքով, մյուսին՝ սպառնալիքով հարկադրել էր կեղծ ցուցմունքներ տալ Մունիի դեմ։

Սակայն, այնուամենայնիվ դատարանն ամեն անգամ մերժում էր ներել Թոմ Մունիին։ Նրան շարունակում էին բանտում պահել նաև այն ժամանակ էլ, երբ նա անմեղ ճանաչվեց։

Բոլոր հինգ նահանգապետները, վորոնք իրար հաջորդեցին այդ ժամանակի ընթացքում Կալիֆորնիայում, ռեակցիոներներ էին։ Նրանք կատարում էին իրենց իշխանության ղեկի մոտ դրած կապիտալի կամքը։

Կապիտալիստները փորձեր արին կաշառելու Թոմ Մունիին։ 1930 թվին նրանք առաջարկեցին յերաշխավորությամբ ազատել նրան, յեթե նա հրաժարվեր հեղափոխական գործունեյությունից։ Սակայն յերկարատև բանտարկությունը չէր ընկճել Մունիին, և նա հայտարարեց, վոր կպայքարի լիակատար արդարացման համար։

***

Բանտի վանդակի հետևից Թոմ Մունին իր հյուսերով լի հայացքն ուղղում էր սո-



ցիալիզմի յերկրին— «համաշխարհային դեմոկրատիայի և բանվորների իրավունքի համար մղվող պայքարի առաջնորդին»։ 1938 թվի ամռան Մունին նամակ ուղարկեց խորհրդային կոլտնտեսուհի ընկ. Սուխոտինային, ՄՈՊՐ-ի ակտիվիստին, վորի մեջ նա գրում էր,—

Իմ բանտարկության յերկար տարիների ընթացքում և արիություն և ուժ եմ քաղել այն բանի գիտակցումից, վոր ԽՍՀՄ-ում միլիոնավոր մարդիկ հանդես են գալիս հանուն մեր ազատության, վոր նրանք պաշտպանում են մեր մղած պայքարը, ամբողջ աշխարհի բանվորների պայքարը։

Յես յերբեք չեմ մոռանա ամերիկյան դեսպանության առաջ, այն քաղաքում, վորն այն ժամանակ կոչվում էր Պետրոգրադ, մեծ Լենինի կազմակերպած ցույցը, վորը փրկեց իմ կյանքը։ Այդ ցույցի շնորհիվ իմ մահվան դատավճիռը փոխարինվեց ցմահ բանտարկությամբ։ Իմ կյանքը փրկեցին Լենինն ու ռուս բանվորները...

Այսոր ամբողջ աշխարհում պայքար է տեղի ունենում դեմոկրատիայի ու ֆաշիզմի միջև։ Մենք տեսանք ֆաշիստական ագրեսորների՝ Իտալիայի ու Գերմանիայի

անարգանքի արժանի դերն իր ազատության համար Իսպանիայի մղած պայքարում: Մենք հանդիսանում ենք Չինաստանի վրա Ճապոնիայի գործադրած բռնության վկաները: Ֆաշիստական ագրեսիային ընդդիմադրում են բոլոր դեմոկրատական ժողովուրդները: Նրանց գլխին կանգնած է ԽՍՀՄ-ն»:

*Իր բանտարկության 22 տարվա ընթացքում Թոմ Մունին յերբեք չկորցրեց բանվոր դասակարգի նկատմամբ ունեցած հավատը և չէր կասկածում այն բանում, որ պրոլետարիատն ազատություն ձեռք կբերի նրա համար:*



*Բանտի վանդակի այն կողմում Թոմ Մունիի անցկացրած տարիների ընթացքում դեմոկրատական շարժումն ԱՄՆ-ում աճեց ու դարձավ հզոր ուժ: Երկրի բանվոր դասակարգը և բոլոր պրոգրեսիվ տարրերը լծվեցին ֆաշիզմի դեմ մղվող պայքարի ընդհանուր ճակատին: Անչափ աճեց աշխատավորության քաղաքական գիտակցությունը:*

1938 *թվի նոյեմբերյան ընտրություննե-*



*րին առաջին անգամ Կալիֆորնիա նահանգի նահանգապետ ընտրվեց պրոգրեսիվ դեմոկրատ- Քելբերտ Օլսոնը: Իր թեկնածությունն առաջադրելով Օլսոնն ընտրողներին խոստացավ- պաշտոնին անցնելուց հետո անհապաղ ազատել Թոմ Մունիին: Ընտրողներն իրենց ձայնը տվին Օլսոնին, որովհետև ամերիկացիների ճնշող մեծամասնությունը հավատում էր Թոմ Մունիի անմեղությանը և ուզում էր, որ նա ազատվի:*

*Օլսոնը կատարեց իր խոստումը: Նոր պոստում նրա առաջին գործը յեղավ ազատել* «№ 31921 *կալանավորին»:*

*Ամերիկյան բանվոր դասակարգի* 22-*ամյա համառ պայքարի շնորհիվ Թոմ Մունին, նրա լավագույն ներկայացուցիչներից մեկը, ազատվել է կապիտալիստական «արդարադատության» ճիրաններից:*

*Սրանից կես տարի առաջ, յերբ Անգլիական կին կոմունիստ Մարջորի Պոլիտըն այցելեց Սեն-Կվենտի բանտի կալանավորին, Թոմ Մունին նրան ասաց,—*

«Քանի յես շնչում եմ, յես պիտի պայքարեմ իմ գաղափարի համար, և այն րոպեյից, յերբ ինձ ազատեն այս բանտից, յես իմ գաղափարի համար կպայքարեմ ե՛լ ավելի մեծ յեռանդով, քան յերբևիցե»։



## ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

# ԱՐԴԱՐԱՑԻ ՅԵՎ ԱՆԱՐԴԱՐԱՑԻ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ

Պատերազմները— մարդու կողմից մարդուն շահագործելու վրա հիմնված ամեն մի հասարակարգի անխուսափելի ուղեկիցն են։ Իշխանության գլխին կանգնած շահագործողները, վորոնք կեղեքում են իրենց սեփական ժողովրդին, չեն կարող ապրել առանց մյուս ժողովուրդներին թալանելու և կեղեքելու։

«Պատերազմը,— ասում է Վ. Ի. Լենինը,— քաղաքականության շարունակությունն է այլ միջոցներով։ Ամեն մի պա-

տերազմ անբաժանելիորեն կապված է այն քաղաքական կարգի հետ, վորից նա բըխում է: Այն քաղաքականությունը, վորը վորոշ պետություն, այդ պետության ներսի վորոշ դասակարգ վարել է պատերազմին նախորդող յերկար ժամանակի ընթացքում, անխուսափելիորեն այդ իսկ դասակարգը կշարունակի վարել պատերազմի ժամանակ, փոխելով միայն գործողության ձևը»:*)

Կողոպտիչ պատերազմների, նվաճողական պատերազմների, անարդարացի պատերազմների հետ միասին անխուսափելիորեն ծագում են նաև արդարացի պատերազմներ, ազատագրական պատերազմներ, պատերազմներ, վորոնց նպատակն է ժողովուրդը պաշտպանել արտաքին հարձակումից, նրան ստրկացնելու փորձերից, պատերազմներ, վորոնք աշխատավորության ազատագրում են շահագործող դասակարգերի ճնշումից:

Այդպես է յեղել հին ժամանակներում, ստրկատիրության դարաշրջանում: Այդ-

*) Լենին, յերկեր հատ 30, էջ 333



պես է յեղել նաև այսպես կոչված միջնադարում, յերբ թագավորական, ֆեոդալական անհամար պատերազմների հետ միասին տեղի եյին ունենում ապստամբած գյուղացիների հեղափոխական արդարացի պատերազմներն իրենց ստրկացնողների դեմ:

Կապիտալիստական հասարակության ամբողջ պատմությունը լի յե նվաճողական արյունալի պատերազմներով, վորոնց հարկադրվել են ազատագրական պատերազմները: Այսպես, 18-րդ դարի վերջում, յերբ Ֆրանսիայում հաղթեց բուրժուական հեղափոխությունը, գերմանական, ավստրիական և մյուս կողոպտիչները ցանկացան ֆրանսիացիներից խլել լավագույն հողերը, վոչնչացնել հեղափոխության նվաճումները, Ֆրանսիան վերադարձնել անսահմանափակ միապետության ժամանակներին: Ոտարերկրյա ինտերվենտների հետ միասին գործում եյին ֆրանսիական էմիգրանտ_ հակահեղափոխականները: Ինտերվենտների հետ դաշնակցության մեջ եր գտնվում ֆրանսիական Լյուդովիկոս 16-րդ թագավորը: Սակայն ֆրանսիական ժողովրդին

հաջողվեց հաջողությամբ պաշտպանել յերկիրը և խորտակիչ հարված հասցնել ոտարերկրյա հափշտակիչներին: Ֆրանսիայում հանրապետություն հռչակվեց: Լյուդովիկոս 16-րդ թագավորը մահապատժի յենթարկվեց, վորպես հայրենիքի դավաճան, վորպես ժողովրդի թշնամի: Այդ պատերազմը, վոր մղում եր ֆրանսիական ժողովուրդը, արդարացի պատերազմ եր, մի պատերազմ, վորին համակրում եյին այն ժամանակվա հասարակության բոլոր առաջավոր մարդիկ:

Քիչ արդարացի ազատագրական պատերազմներ չի մղել ռուս մեծ ժողովուրդը, հերոսաբար իր հայրենիքը պաշտպանելով թշնամիների թալանչիական արշավանքներից: 13-րդ դարի սկզբում ռուս ժողովուրդն անողոք պարտության մատնեց Նովգորոդյան հողի վրա արշաված շվեդական բանդաներին:

1242 թվին ռուսական հողի վրա հարձակվեցին գերմանական «շուն-ասպետները», ինչպես նրանց անվանում եր Մարքսը: Այդ լկտի, արյունռուշտ դիշատիչները նկատի ունեյին գրավել հարուստ յերկիրը, սրով ու հրով ստրկացնել և



վոչնչացնել ռուս ժողովրդին, ինչպես այդ նրանք արել եյին մի շարք սլավոնական ցեղերի հետ, վորոնց հողերը կազմում են ժամանակակից Գերմանիայի զգալի մասը: Չհաջողվեց: Ռուս դյուցազն ժողովուրդը արագությամբ ջարդ ու փշուր արավ ասպետական պարծենկոտ ստահակների ամբարտավանությունը: Չուդ լճի սառույցի վրա գերմանական հրոսակախմբերը ջախջախվեցին: «Սրիկաները վերջնականապես դեն շպրտվեցին ռուսական սահմաններից» (Մարքս):

Ռուս ժողովուրդը թույլ չտվեց իր վզին նստելու նաև լեհական պաներին, վորոնք ոգտվելով բոյարական խառնակչությունից, հասել եյին մինչև Մոսկվա: Ռուս ժողովուրդը միահամուռ կերպով բարձրացավ լեհերի դեմ և 1612 թվին աշխարհազորը Մոսկվան ազատեց պանական աղտեղությունից: Լեհական հափշտակիչները խայտառակությամբ փախան Ռուսաստանից:

Արդարացի, ազատագրական պատերազմների պատմության մեջ հուզիչ եջեր են գրվել 1812 թվականի ժողովրդական պատերազմով: Ոտարերկրյա հափշտակիչնե-

րի դեմ, վորոնք հարձակվել եյին ռուսա-
կան հողերի վրա, վոտքի կանգնեց մեր
ամբողջ հերոսական ժողովուրդը: Նա
խորտակեց և վոչնչացրեց Նապոլեոնյան
բանակը, վորը բաղկացած եր վոչ միայն
ֆրանսիական, այլև իտալական, գերմա-
նական, լեհական և այլ զորքերից ու մինչ
այդ համարվում եր անպարտելի:

Ամեն ժամանակ, յերբ հարկավոր է լի-
նում սովետական հայրենիքը պաշտպանել
թշնամիների արշավանքներից, ռուս ժո-
ղովուրդը հերոսության և անձնուրացու-
թյան հրաշքներ է գործել, իր անխորտա-
կելի ուժն է ցույց տվել:

***

Պատերազմներն առանձնահատուկ ծա-
վալ են ստանում իմպերիալիզմի եպոխա-
յում, փտած կապիտալիզմի եպոխայում:

Իմպերիալիստական յերկրները չեն կա-
րող ապրել առանց նոր հողեր, նոր վայ-
րեր գրավելու՝ կապիտալ և ապրանք ար-
տահանելու համար, հումքի նոր աղբյուր-
ներ գտնելու համար: Սակայն ամբողջ
աշխարհն արդեն բաժանված է: Այստեղից
էլ առաջանում են իմպերիալիստական,



հափշտակողական պատերազմները՝ աշխար-
հի նոր վերաբաժանման համար:

Այդ հիման վրա առաջ յեկավ 1914–1918
թվերի համաշխարհային պատերազմը:

Այդ հիման վրա մի ամբողջ շարք պա-
տերազմներ առաջ յեկան առաջին համաշ-
խարհային իմպերիալիստական պատերազ-
մից առաջ ու հետո:

Իմպերիալիզմի դարաշրջանում նույնքան
անխուսափելի յեն գաղութային ժողո-
վուրդների և կախյալ փոքր յերկրների
ժողովուրդների ազգային ազատագրական
պատերազմները: Այսպես 1904–1907 թվե-
րին պատերազմի դուրս յեկան հարավ-
աֆրիկյան ցեղերը, փորձելով դեն նետել
գերմանական տիրակալողների լուծը:

Այսպես պատերազմի դուրս յեկավ չինա-
կան ժողովուրդը տարբերկրյա «չեկրառա-
նաների» —իմպերիալիստների դեմ՝ 900-
ական թվերի սկզբին: Այսպես անգլիա-
ցիների տիրապետության դեմ ապստամ-
բեցին բուրերը (Աֆրիկայում) և Իռլանդա-
ցիները:

Վերջին տարիներս պատերազմները դար-
ձել են առանձնապես հաճախակի, ամե-

բական յերեվույթ: Գազանանման ֆաշիզմը, վորը մի շարք յերկրներում գրավել է իշխանությունը, պատերազմի հրդեհը վառել է աշխարհի զանազան ծայրերում: Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի ֆաշիստական բանդիտները, վորոնք հրեշավոր կերպով շահագործում և արյունալի կերպով դատաստան են տեսնում աշխատավորության հետ յերկրի ներսում, ճիշտ այդպիսի սանձարձակ, թալանչիական արյունալի արտաքին քաղաքականություն են վարում:

Արդեն սկսվել է յերկրորդ իմպերիալիստական պատերազմը: Այդ պատերազմը նպատակ ունի նոր հրեշավոր արյունալի կերպով վերաբաժանել աշխարհը ֆաշիստական պետությունների ոգտին՝ փոքր և թույլ յերկների հաշվին և այսպես կոչված դեմոկրատական պետությունների—Ֆրանսիայի, Անգլիայի ու ԱՄՆ-ի հաշվին:

Իտալական իմպերիալիստները հաբեշական ժողովրդի արյունով ներկում են Հաբեշստանի լեռներն ու դաշտերը:

Իտալո-գերմանական ֆաշիստներն աշխատում են խեղդել ազատասեր իսպանական ժողովրդին, իսպանացիներից խլել



լավագույն հողերը, գրավել իսպանական հումքը, գրաված տերիտորիայի վրա ըստեղծել իրենց բազաները՝ նորանոր գրավումներ և է՛լ ավելի արյունալի պատերազմներ կազմակերպելու համար:

Ճապոնական հափշտակիչները լկտիորեն հարձակվեցին Չինաստանի վրա: Նրանք ցանկանում են չինական բազմամիլիոն ժողովուրդը դարձնել իրենց գաղութային ստրուկները: Նրանք ձգտում են չինական շուկայից արտամղել անգլիական, ամերիկյան, իրենց մյուս մրցակիցներին:

Ցինիկ շանտաժի և սպառնալիքների միջոցով գերմանական ֆաշիստները, իրենց լեհական ու հունգարական գործակիցների հետ միասին, անգլո-ֆրանսիական ռեակցիոներների ամոթալի, դավաճանական «միջնորդությամբ» թալանեցին Չեխո-Սլովակիան, նրանից կտրելով նրա տերիտորիայի կարեվորագույն մասերը և իրենց ազդեցությանը յենթարկելով յերկրի այն մասը, վորն իբր թե անկախ է մնացել: Թալանվածի շուրջը գիշատիչների կռիվ է սկսվել, վորը տանում է դեպի է՛լ ավելի մեծ գժտություններ:

Ֆաշիստական բանդիտներն արշավանք

են պատրաստում հաղթանակած Սոցիալիզմի Յերկրի դեմ—Խորհուրդների Յերկրի դեմ: Նրանք մեր յերկիրն են ուղարկում իրենց լրտեսներին, վնասարարներին և դիվերսանտներին, նրանք վորպես իրենց վարձկան գործակալների օգտագործում են հայրենիքի՝ տրոցկիստական-բուխարինական և բուրժուական-նացիոնալիստական դավաճաններին:

Ֆրանսիայի և Անգլիայի ռեակցիոն շըրջանները, անասնական վախ զգալով իրենց սեփական ժողովուրդներից, օժանդակում են ֆաշիստական հափշտակիչներին, սուտ հեքյաթներ տարածելով այն մասին, վոր իբր թե ֆաշիստական ագրեսորներին արված զիջումները կարող են կանխել պատերազմը:

Իսկ ինչպե՞ս են վերաբերվել և վերաբերվում պատերազմին բոլշեվիկները: Ինչպե՞ս է նայում պատերազմի վրա ամբողջ խորհրդային ժողովուրդը:

Բոլշեվիկները միշտ այն կարծիքի յեն յեղել, վոր պատերազմներին պետք է վերաբերվել նայած այն բանին, թե իրենից ինչ է ներկայացնում յուրաքանչ...
յալ պատերազմը: «Պատմական ինչ պայ-



մաններից է բղխել տվյալ պատերազմը, վո՞ր դասակարգերն են այն մղում և հանուն ի՞նչի»:*)

Իսկ այն հարցը, թե ո՞վ է կատարել ներխուժումը, չի վորոշում պատերազմի բնույթը:

«Համկ(բ)Կ Պատմության համառոտ դասընթացի» մեջ սպառիչ հստակությամբ պարզաբանվում է բոլշեվիկների դիրքը առաջին իմպերիալիստական պատերազմի օրերին:

«Բոլշեվիկները դեմ եյին վոչ ամեն տեսակ պատերազմին: Նրանք դեմ եյին միայն հափշտակողական, իմպերիալիստական պատերազմին: Բոլշեվիկները գտնում եյին, վոր պատերազմը յերկու տեսակ է լինում՝

ա) արդարացի, վոչ- հափշտակողական, ազատագրական պատերազմ, վորի նպատակն է կամ պաշտպանել ժողովրդին արտաքին հարձակումից և նրան ստրկացնելու փորձերից, կամ ազատագրել ժողովրդին կապիտալիզմի ստրկությունից, կամ, վերջապես, ազատել գաղութներն

*) Լենին, հատ. 30, եջ 333

ու կախյալ յերկրներն իմպերիալիստների լծից, և

բ) անարդարացի, հափշտակողական պատերազմ, որի նպատակն է զավթել և ստրկացնել ուրիշ յերկրներ, ուրիշ ժողովուրդներ:

Առաջին տեսակ պատերազմը բոլշևիկները պաշտպանում էին: Ինչ վերաբերում է յերկրորդ տեսակ պատերազմին, բոլշևիկները գտնում էին, որ նրա դեմ պետք է վճռական պայքար մղել՝ ընդհուպ մինչև հեղափոխություն և իր իմպերիալիստական կառավարության տապալումը»: *)

Իմպերիալիզմի դարաշրջանի խորն ուսումնասիրման հիման վրա Վ. Ի. Լենինն ապացուցեց, որ սոցիալիզմի հաղթանակը չի կարող տեղի ունենալ միաժամանակ բոլոր յերկրներում: Սկզբնապես սոցիալիզմը կարող է և պետք է հաղթանակի մեկ կամ մի քանի յերկրներում, մինչդեռ մնացած յերկրները որոշ ժամանակի ընթացքում կմնան բուրժուա-

*) «Համ Կ(բ)Կ համառոտ պատմության դասընթաց» էջ 238



կան: Վ. Ի. Լենինը նախատեսում էր, որ հաղթանակած Սոցիալիզմի Յերկիրը կատաղի ատելության կհանդիպի կապիտալիստական պետությունների կողմից: Այստեղից անխուսափելի յե ռազմական կապիտալիստական պետությունների ձգտումը՝ ոչնչացնելու սոցիալիստական պետությունը: Սոցիալիստական պետության պատերազմը կապիտալիստական յերկրների դեմ կհանդիսանա, սովորեցնում էր Լենինը, ազատագրական մեծ պատերազմ, պատերազմ հանուն սոցիալիզմի հաղթանակի ամբողջ աշխարհում, յերբեվիցե տեղի ունեցած բոլոր պատերազմներից ամենաարդարացի պատերազմը:

Այդպիսի արդարացի, հայրենական պատերազմը խորհրդային յերկիրը Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ 1918–1920 թվերին մղել է միջազգային իմպերիալիզմի միացյալ ուժերի դեմ: Այդպիսի պատերազմ խորհրդային ժողովուրդը կմղի բոլոր ինտերվենտների դեմ, որոնք համարձակվեն նորից հարձակվել մեր չքնաղ հայրենիքի վրա: Խորհրդային ժողովրդի պատերազմը կլինի

ամենաարդարացի, ամենասրբազան պատերազմը, որը երբեւիցե մղել է մարդկությունը: Այդ պատերազմը կլինի, ընկեր Ստալինի փայլուն արտահայտությամբ, «ամենավտանգավոր պատերազմը բուրժուազիայի համար» (Ի. Ստալին «Լենինիզմի հարցերը»), մի պատերազմ, որը ոչ միայն պարտության կմատնի հարձակվողներին, այլև կջախջախի այդ երկրների բուրժուական-կալվածատիրական կառավարությունները, մի պատերազմ, որը կմղվի հակառակորդի տերիտորիայում, մի պատերազմ, որը կցնցի ամբողջ պառաված կապիտալիստական աշխարհը:

Կարմիր Հրապարակում 1938 թվի նոյեմբերի 7-ին արտասանած իր ճառում Ստալինյան ժողկոմ ընկեր Վորոշիլովն ասաց.

«Թող հիշեն նրանք, ովքեր չպետք է մոռանան, որ մենք բոլորովին էլ պարտավոր չենք մեր զորքերի գործողությունները միշտ սահմանափակել այն ռայոնով, որի վրա գողունի ու ըստորեն հարձակվում է թշնամին: Ընդհակառակը,



մեզ ավելի ձեռնտու և ավելի հեշտ է թշնամուն ջախջախել նրա սեփական տերիտորիայում: Այդպես էլ կլինի — ամեն մի հարձակման և հարվածին մենք կպատասխանենք մեր քաջարի Կարմիր Բանակի ամբողջ հզորության եռակի հարվածներով»:

***

Խորհրդային կառավարությունն իր գոյության առաջին օրերից պայքարել է խաղաղության համար: Սակայն հիշելով մեր երկրի կապիտալիստական շրջապատման մասին, կուսակցությունը և կառավարությունն անդուլ կերպով հոգ են տարել և հոգ են տանում խորհրդային պետության պաշտպանական հզորության ամրապնդման մասին: Ահա թե ինչու մեր կուսակցության հանճարեղ առաջնորդ, ամբողջ աշխարհի աշխատավորության հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինը կոչ է անում ամեն կերպ ամրապնդել սոցիալիստական պետությունը, ամեն կերպ ամրապնդել Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը: Ահա թե ինչու անհրաժեշտ է

մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստականության վիճակում ռազմական հարձակման վտանգի դեմհանդիման, որպեսզի ոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուս չկարողանան մեզ հանկարծակիի բերել...» (ընկեր Իվանովի նամակը և ընկեր Ստալինի պատասխանը):

Բոլշևիկյան կուսակցությունը աշխարհում միակ կուսակցությունն է, որը հետևողականորեն և մինչև վերջն իր պանծալի պատմության բոլոր էտապներում հեղափոխական ակտիվ պայքար է մղում խաղաղության համար:

Այդ պայքարում մեր կուսակցությունն ամենավճռական կերպով տարբերվում է այսպես կոչված պացիֆիստներից («խաղաղասերներից»):

Բոլշևիկյան կուսակցությունը սովորեցնում է, որ մարդկությանը պատերազմներից կարելի յե ազատել միմիայն մեկ ճանապարհով՝ ոչնչացնելով կապիտալիզմն ամբողջ աշխարհում, ոչնչացնելով անիծյալ, թալանով սնվող մասնավոր սեփականությունը, սոցիալիզմի դրո-



շը ծածանեցնելով ամբողջ աշխարհում: Դրա համար ել պետք է պայքար մղել և ոչ թե զբաղվել պատերազմի դեմ ուղղված պացիֆիստական անարժեք նզովքներով:

Բոլշևիկյան կուսակցությունը կոչ է անում վճռականորեն հակահարված տալ ֆաշիստական ագրեսորներին: Բոլշևիկյան կուսակցությունը մերկացնում է ֆաշիզմի գործակիցներին՝ անգլիական և ֆրանսիական ռեակցիայի բանակից: Բոլշևիկյան կուսակցությունը բացահայտորեն հայտարարում է, որ ինքը համերաշխ է իսպանական և չինական հերոսական ժողովուրդների հետ, որոնք արդարացի պատերազմ են մղում ֆաշիստական ինտերվենտների դեմ և պաշտպանելով իրենց անկախությունը, դրանով իսկ պայքարում են ամբողջ առաջավոր, պրոգրեսիվ մարդկության գործի համար: Բոլշևիկյան կուսակցությունը խաղաղության գործը կապում է ֆաշիստական հափշտակիչների դեմ մղած անողոք պայքարի գործի հետ, աշխատավորության ինտերնացիոնալ համերաշխության ամրապնդման գործի հետ:

*Ամբողջ աշխարհի կոմունիստները հեղափոխական ակտիվ պայքար են մղում հափշտակողական պատերազմների դեմ և միևնույն ժամանակ պաշտպանում են արդարացի պատերազմները, ազատագրական պատերազմները: Հափշտակողական պատերազմների դեմ մղվող պայքարում բոլշևիկներն առաջադրում են իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու ակտիվ մարտական լոզունգը, իր բուրժուազիայի դեմ ժողովրդական մասսաների հեղափոխական անողոք պայքարի լոզունգը, իր իմպերիալիստական և առաջին հերթին ֆաշիստական բռնակալների կառավարությունների աշխատավորության կողմից տապալելու լոզունգը:*

*Պատերազմը ֆաշիզմի— աշխատավորության ամենավոխերիմ թշնամու, առաջավոր և պրոգրեսիվ մարդկության թշնամու դեմ՝ հանդիսանում է ամենասրբազան, ամենաարդարացի պատերազմը:*



## ՀԱՎԵԼՎԱԾ

### ՄԱՐՏԻ 8-Ի ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՐՎԱ ԱՌԹԻՎ

# ՄԱՐՏԻ 8-Ի ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ, ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՐՎԱ ՄԱՍԻՆ

### ՀԱՄ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

Այս տարի լրանում է մեր յերկրում կանանց Միջազգային կոմունիստական որը տոնելու քսանհինգերորդ տարեդարձը.

ԽՍՀՄ-ի աշխատավորները մարտի 8-ը— կանանց Միջազգային կոմունիստական որը— դիմավորում են բոլշևիկների կուսակցության և խորհրդային իշխանության

չուրջն աշխատավորների հուժկու համախմբման պայմաններում, վորը վկայում է խորհրդային ժողովրդի ներքին քաղաքական ու բարոյական միասնականության մասին:

Խորհրդային Միության մեջ, վորտեղ կենսագործված են սոցիալիզմի՝ Ստալինյան Սահմանադրության մեջ գրի առնված մեծ սկզբունքները, կիներ հավասարության ազատ ու լիիրավ անդամ է քաղաքական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում և ընտանեկան կենցաղում:

Խորհրդային կանայք աշխատում են սոցիալիստական շինարարության բոլոր ճյուղերում: Մեր յերկրի ձեռնարկություններում ու հիմնարկություններում աշխատում են ավելի քան 9 միլիոն կանայք— ԽՍՀՄ բոլոր բանվորների ու ծառայողների մեկ յերրորդից ավելի:

Խորհրդային կնոջ առջև լայն բացված են դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները: 1936–1937 ուսումնական տարում տարրական և միջնակարգ դպրոցներում սովորող աղջիկների թիվը հասավ 13 միլիոնի, իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններում



սովորող ուսանողուհիների թիվը կազմեց ուսանողների ընդհանուր թվի 41 տոկոսը: Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, կուլտուրայի բնագավառում աշխատում են կին—մասնագետների բազմաթիվ կադրեր: Միայն խոշոր արդյունաբերության մեջ 1937 թվին աշխատում եյին մոտ 100 հազար կին–ինժեներներ ու տեխնիկներ, մեր յերկրում կա մոտ 50 հազար բժշկուհի:

Անցյալ տարին նշանակալից եր խորհրդային կանանց հասարակական ակտիվության ու քաղաքական գիտակցության նոր անմամբ, կանանց խորհրդային, պրոֆմիութենական, կուսակցական ու կոմյերիտական ակտիվի նոր կադրերի աճմամբ: Այդ աճման պայծառ ցուցանիշը հանդիսացավ ինչպես աշխատավոր կանանց հսկայական մասսաների մասնակցությունը ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրական կամպանիային և բուն ընտրություններին, այնպես և մեծ թվով— 189 կին– դեպուտատների ընտրությունը Գերագույն Խորհրդում: Այս բոլորը վկայում է պետության կառավարման մեջ խորհրդային կնոջ այնպիսի լայն մասնակցության մասին, վորը չկա և չի

կարող լինել կապիտալիստական վոչ մի յերկրում:

Ի տարբերություն կապիտալիստական բոլոր յերկրներից, միայն մեր յերկրումն է, վոր խորհրդային կնոջ համար պայմաններ են ստեղծված ապահով ու յերջանիկ մայրության համար: Մոր իրավունքները և յերեխաների առողջությունը պահպանվում են խորհրդային որենքներով: Կոմունիստական կուսակցությունը և խորհրդային կառավարությունն որը-որին հոգ են տանում մայրության ու մանկության պահպանության համար: Վերջին տարիների ընթացքում ծավալվել է ծննդատների, մանկական կոնսուլտացիաների, մանկամսուրների մեծ շինարարություն, դրամական հսկայական միջոցներ են վճարվել վորպես նպաստ բազմազավակ մայրերին: Ցարական Ռուսաստանում յեղած 9 կոնսուլտացիաների և ծննդատների ու հիվանդանոցների մոտ 7 հազար մահճակալների անճշան թվի փոխարեն, խորհրդային Միության մեջ 1937 թվին կային 4 հազարից ավելի մանկական կոնսուլտացիաներ և 81,5 հազար մահճակալ՝ ծննդատներում ու հիվանդանոցներում:



Մայր-կնոջ և յերեխայի նկատմամբ բոլշևիկների կուսակցության ու խորհրդային իշխանության այդ հոգատարության արդյունքները պարզ յերևում են ծննդաբերության վիթխարի անման մեջ:

Համ Կ(բ)Կ Կենտկոմն առաջարկում է կուսակցական կազմակերպություններին՝ բոլոր աշխատավորներին լայնորեն պարզաբանել կանանց Միջազգային Կոմունիստական որվա և մեր յերկրում նրա տոնակատարության 25-րդ տարեդարձի նշանակությունը:

Կուսակցական կազմակերպությունները պետք է կանանց դաստիարակեն խորհրդային հայրենասիրության, սոցիալիստական հայրենիքի, խորհրդային իշխանության և բոլշևիկների կուսակցության նկատմամբ սիրո ու նվիրվածության վոգով, ատելության վոգով դեպի փաշիզմի աջ-տրոցկիստական գործակալները, վորոնք ձգտում են յեն ԽՍՀՄ աշխատավորներին, այդ թվում խորհրդային կանանց, զրկել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության բոլոր նվաճումներից, սոցիալիզմի նվաճումներից, ազատ, լիիրավ խորհրդային կնոջ

վզին դնել փաշիստական ճշմման ու իրավազրկության լուծը:
Կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն և ամրապնդեն ԽՍՀՄ կանանց պրոլետարական ինտերնացիոնալ կապերը բուրժուական յերկրների աշխատավոր կանանց հետ, կազմակերպեն ԽՍՀՄ կանանց հետագա օգնությունն Իսպանիայի ու Չինաստանի աշխատավոր կանանց, ուժեղացնեն պաշտպանական աշխատանքը խոր թիկունքի կանանց մեջ:
Մարտի 8-ին կանանց Միջազգային Կոմունիստական որ անցկացնելով, վորպես մասսայական- քաղաքական կամպանիա, կուսակցական կազմակերպությունները պետք է իրենց առջև դնեն տոնախմբության շարժման մասսայական տարածման խնդիրները աշխատավոր կանանց մեջ, վորոնք սոցիալիստական աշխատանքի վիթխարի բանակ են կազմում:
Կուսակցական կազմակերպությունները պետք է բոլոր ջանքերը գործադրեն երկրի պաշտպանությունը բարձրացնելու համար խորհրդային կանանց հասարակական ակտիվությունն ու քաղաքական գիտակցությունը, կազմակերպելով նրանց՝ միութենական հանրապետու-



թյունների Գերագույն Խորհուրդների առաջիկա ընտրություններին ակտիվ մասնակցություն ունենալու համար:
Կուսակցական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն իրենց աշխատանքն առաջավոր կանանց խորհրդային, տնտեսական, պրոֆմիութենական և կուսակցական կազմակերպություններում ղեկավար պոստերի ու պաշտոնների առաջ քաշելու ուղությամբ, բոլշևիկների կուսակցության շարքերը ներգրավելով լավագույն անկուսակցական կանանց, վորոնք ապացուցել են իրենց նվիրվածությունը սոցիալիզմի գործին:
Համ Կ(բ)Կ Կենտկոմը հատկապես մատնանշում է, վոր անհրաժեշտ է ուժեղացնել եռանդաբուլությունը մայր- կնոջ նկատմամբ, հիշելով, վոր մեր յերեխաների, մեր ապագա սերնդի—այսինքն մեր ապագայի դաստիարակությունը հանդիսանում է կնոջ կարևորագույն խնդիրներից մեկը: Կուսակցական կազմակերպությունները պետք է հետևեն իդի կանանց, ծննդկաններին ու բազմազավակ մայրերին օգնելու, ծննդատները ու մանկական հիմնարկների ցանցն ընդարձակելու մասին խորհրդային կառավա-

բության վորոշումների անշեղ կատարմանը, իրենց՝ աշխատավոր կանանց աշխատանքի ներգրավելով այդ վորոշումների կենսագործման ուղղությամբ:

ՀԱՄ Կ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄ

1938 թ. մարտի 8-ը

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՈՐԸ

## ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Կանանց միջազգային կոմունիստական որն այս տարի տոնվում է Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության 18-րդ համագումարի բացման նախօրյակին, վորը կամփոփի սոցիալիզմի հաղթանակների վիթխարի արդյունքները և կնշի մեր յերկրի հետագա հաղթական զարգացման ուղիները, վորն ընթանում է դեպի կոմունիզմի լիակատար հաղթանակը:

Այդ նշանակալից իրադարձության նշանաբանով խորհրդային ամբողջ ժո-

ղովուրդը մարտի 8-ը կտոնի վորպես կնոջ ազատագրման մասին Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի մեծ գաղափարների հաղթանակի օր:

«Պրոլետարիատը չի կարող լիակատար ազատության հասնել, առանց լիակատար ազատություն նվաճելով կանանց համար»,— ասել է աշխատավորության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը (Լենին, Երկ. հատ. XXV, էջ 41):

Մեր յերկրում, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության հաղթանակից հետո, Կոմունիստական կուսակցությունը և նրա մեծ առաջնորդները Լենինն ու Ստալինը շարունակեցին ղեկավարել բանվորուհիների և գեղջկուհիների շարժումը, աշխատավոր կանանց կազմակերպել բոլշևիկյան լոզունգների շուրջը: Լենինը և Ստալինը բազմիցս մատնանշել են, վոր սոցիալիստական շինարարության հաջողության անհրաժեշտ պայմանը կանանց մասնակցությունն է այդ շինարարությանը:

Վ. Ի. Լենինը բանվորուհիների Մոսկվայի համաքաղաքային անկուսակցական 4-րդ կոնֆերանսում 1919 թվին ասում էր՝



«Խորհրդային իշխանության սկսած գործը կարող է առաջ շարժվել միայն այն ժամանակ, յերբ ամբողջ Ռուսաստանում, հարյուրավոր կանանց փոխարեն այդ շարժմանը մասնակցեն միլիոնավոր ու միլիոնավոր կանայք» (Լենին, Երկ. հատ. XXIV, էջ 472):

Մեր կուսակցությունը, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, լենինյան ցուցումները կենսագործեց կյանքում: Սոցիալիզմի փառահեղ շենքը մեր յերկրում բարձրացված է միլիոնավոր աշխատավոր կանանց ակտիվ մասնակցությամբ:

Մարտի 8-ի որը մեր յերկրում—համաժողովրդական տոն է: Այս տարի այդ որը կտոնվի հսկայական խանդավառության պայմաններում, վոր առաջ է յեկել կուսակցության 18-րդ համագումարի առթիվ: Յերրորդ հնգամյակի ընթացքում Սոցիալիզմի յերկրի հետագա բարգավաճման վիթխարի հեռանկարները վոգեվորում են ամբողջ խորհրդային ժողովրդին, բոլոր աշխատավոր կանանց՝ պայքարել աշխատանքի բարձր, սոցիալիստական արտադրողականության համար:

Մարտի 8-ի օրը կանցնի կանանց մեջ ստախանովյան շարժման լայն ծավալման և աշխատանքի կարգապահության ամրապնդման, կուլտուրայի, տեխնիկայի, գիտության տիրապետման, մեր հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդման համար պայքարելու լոզունգներով: Այդ օրը կանցնի մեր յերկրի աշխատավոր կանանց՝ կոմունիստական կուսակցության և խորհրդային կառավարության շուրջը համախմբելու նշանաբանով:

Կանանց միջազգային կոմունիստական օրը կանցկացվի ամբողջ աշխարհում: Աշխատավոր կանայք բոլոր յերկրներում մարտի 8-ի օրը հանդես կգան անհաշտ պայքարի լոզունգներով ընդդեմ արյունոտ ֆաշիզմի, վորը ժողովուրդներին մղել ե յերկրորդ իմպերիալիստական պատերազմի մեջ: Այդ օրն ամբողջ աշխարհում նոր ուժով կհնչի բողոքի ձայնը՝ ֆաշիստական ավազակների հետ բուրժուազիայի համաձայնության քաղաքականության դեմ: Բոլոր յերկրների բանվորուհիների և գեղջկուհիների հայացքներն այդ օրը կուղղվեն դեպի սոցիալիզմի մեծ



յերկիրը— դեպի խաղաղության նեցուկը, ամբողջ պրոգրեսիվ մարդկության հույսն ու հենարանը, դեպի միակ յերկիրը, վորը գործով իրականացրել և կանանց լիակատար իրավահավասարությունը:

## ՄԻԱՅՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿՐՈՒՄՆ Ե ԿԻՆԸ ԼԻԻՐԱՎ

Խորհրդային կինը — հասարակության ազատ, իրավահավասար անդամ ե, սոցիալիզմի ակտիվ կառուցող, քաղաքական մեծ ուժ՝ մեր յերկրում:

Կապիտալիստական յերկրների կինը, առաջվա նման, ինչպես հարյուրավոր տարիներ առաջ, գտնվում ե հասարակության իրավազուրկ կամ վոչ լիիրավ անդամի վիճակում: Դրությունն այսպես ե նույնիսկ բուրժուական դեմոկրատիայի յերկրներում, չխոսելով արդեն ֆաշիզմի յերկրների մասին, վորտեղ վերականգնըված են միջին դարերի ամենավայրի օրենքները, բարքերը և սովորությունները:

«Մարդկային ցեղի կանանց կեսին վոչ մի, թեկուզ և ամենաառաջավոր, բուր-

ժուական հանրապետություն, գործնականում չի տվել վոչ լիակատար հավասարություն տղամարդու հետ՝ օրենքով, վոչ էլ ազատություն՝ տղամարդու խնամակալությունից ու ճնշումից»— գրել է Լենինը (*Լենին, Յերկ. հատ.* XXIV, *էջ* 517):

*Չկա կապիտալիստական և վոչ մի յերկիր, վորտեղ կինը տղամարդուն հավասար աշխատավարձ ստանա: Օրինակ, ԱՄՆ-ում կնոջ աշխատավարձը կազմում է տղամարդկանց՝ նույն աշխատանքի համար ստացված աշխատավարձի 58,6 տոկոսը, Անգլիայում՝ 46 տոկոսը, Գերմանիայում՝ 40 տոկոսը, Ճապոնիայում՝ 31.7 տոկոսը (այսինքն տղամարդու աշխատավարձից ավելի քան յերեք անգամ պակաս):*

*Ֆրանսիայի քաղաքացիական կոդեքսի 213-րդ հոդվածի մեջ ասված է՝ «... կինը պարտավոր է հնազանդվել իր ամուսնուն»: Նույն քաղաքացիական կոդեքսի 214-րդ հոդվածն ասում է, վոր կինը պարտավոր է ապրել իր ամուսնու հետ նույն ծածկի տակ և նրա հետևից գնալ այնտեղ, վորտեղ նա անհրաժեշտ գտնի բնակվել: Այդ օրինակների ուժով ամուսինը կարող է ուժով հարկադրել կնոջը վերադառնալ ամուսնական տունը:*



*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը առաջին իսկ օրերից մեր յերկրում վոչնչացրեց կանանց անիրավահավասարության վայրենի օրենքները:*

*Դեռ* 1919 *թվին Վ. Ի. Լենինն ասում էր.* «Այն օրենքներից, վոր կնոջը հպատակվողի դրության մեջ են դրել, խորհրդային հանրապետության մեջ քարը քարի վրա չի մնացել» (*Լենին, Յերկ. հատ.* XXIV, *էջ* 468):

*Այդ միայն առաջին քայլն էր: Այնուհետև խնդիր էր ծառացած վոչ միայն հասնել ըստ օրենքի կնոջ հավասարության, այլև տնտեսական ու սոցիալական հավասարության:*

## ԿԱՆԱՆՑ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

*Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, վոր կանանց փաստական ազատագրությունը ձեռք կարող է բերվել միայն սոցիալիստական տնտեսության և հասարակական արտադրողական աշխատանքում կանանց ամենալայն մասնակցության հիման վրա: Այդ հիմքն ստեղծված է մեր յերկրում, վորտեղ «հիմնականում իրականացված է կոմունիզմի առաջին փուլը—սոցիալիզմը» (Ստալին):*

Ստալինյան հնգամյակների տարիներին բանվորուհիների և կին-ծառայողների թիվը 3,3 միլիոնից աճեց ու հասավ 9,4 միլիոնի: Կոլտնտեսային աշխատանքում մասնակցում են 19 միլիոն կանայք:

Սոցիալիզմի հաղթանակների փաստե գրքում—Ստալինյան Սահմանադրության մեջ գրի յեն առնված, Սոցիալիստական Մեծ հեղափոխությամբ նվաճված, կնոջ տղամարդկանց հավասար «տնտեսական, պետական, կուլտուրական և հասարակական—քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում» մասնակցելու—իրավունքները:

Սոցիալիստական պետության սահմանադրությունն այդ իրավունքների փաստացի իրագործումը ապահովում է «կնոջ՝ տղամարդուն հավասար իրավունք տալով աշխատանքի, աշխատանքի վարձատրության, հանգստի, սոցիալական ապահովագրության ու կրթության ասպարեզում, մոր ու մանկան շահերի պետական պաշտպանությամբ, կնոջը հղիության ժամանակ արձակուրդ տալով՝ պահպանելով աշխատավարձը, ծննդատների, մանկամ-



սուրների ու մանկապարտեզների լայն ցանցով»:

Մինչև հեղափոխությունը արդյունաբերության մի ամբողջ շարք ճյուղերում կանանց մուտքը փակված եր: Կին ինժեներներ ու տեխնիկներ գրեթե բոլորովին չկային: Կապիտալիստական յերկրներում կանանց աշխատանքը կիրառվում է բարձր վորակավորում չպահանջող ճյուղերում ու պրոֆեսիաներում: Կապիտալիստները կանանց ոգտագործում են վորպես առավել եժան բանվոր:

Մեր յերկրում կանանց ազատ աշխատանքն արմատացել է բոլոր ճյուղերում, բոլոր վորակյալ պրոֆեսիաներում, նա վարձատրվում է տղամարդուն հավասար և պահպանվում է սոցիալիստական պետության որենքներով: Կինն սկսել է հրամանատարական բարձունքներ եվ նվաճել արդյունաբերության մեջ, աշխատելով վորպես ցեխի պետ, վարպետ, գլխավոր ինժեներ, դիրեկտոր, տրեստի կառավարիչ:

Կոլտնտեսային կարգի հաղթանակը փաստական ազատագրում է բերել գեղջկուհուն: Կոլտնտեսությունը կնոջ համար

տնտեսական ինքնուրույնություն է ապահովում:

«Կոլտնտեսությունն աշխօրերով ազատեց կնոջը և նրան դարձրեց ինքնուրույն: Այժմ նա աշխատում է ո՛չ թե հոր համար, երբ նա աղջիկ է, ո՛չ թե ամուսնու համար, երբ նա ամուսնացած է, այլ ամենից առաջ իր համար է աշխատում: Ահա այս էլ նշանակում է ազատագրել գեղջկուհի-կնոջը, այս էլ նշանակում է կոլտնտեսային կարգ, որն աշխատավոր կնոջը հավասար է դարձնում ամեն մի աշխատավոր մարդու (Ստալին):

Կինը կոլտնտեսության մեջ տղամարդուց պակաս չի վաստակում, իսկ երբեմն էլ՝ ավելի:

1937 թվին կոլտնտեսություններում յուրաքանչյուր տնտեսություն միջին հաշվով վաստակել է 439 աշխօր, որից 163 աշխօր, կամ 37 տոկոսը վաստակել են կոլտնտեսուհիները:

«...Կոլտնտեսային շարժումը ղեկավար պաշտոնների յե առաջ քաշել մի ամբողջ շարք հիանալի ընդունակ կանանց» (Ստալին):

Կոլտնտեսությունների նախագահների, նախագահների տեղակալների և վարչության անդամների թվում քիչ կանայք չկան:



Կոլտնտեսային կարգի տարիներին աճել են բրիգադիրների, գյուղատնտեսների, զոոտեխնիկների, դաշտավարների, տրակտորիստների, հիանալի, տաղանդավոր ղեկավարների կանանց բազմահազար կադրեր:

# ԿԻՆԸ ՄԱՍՆԱԿՑՈՒՄ Է ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆԸ

Խորհրդային Միության ազատագրված կինը ակտիվորեն մասնակցում է երկրի քաղաքական կյանքին, պետության կառավարմանը: Ստալինյան Սահմանադրության 137-րդ հոդվածում գրի յե առնված այն անխախտ իրավունքը, որ մեր երկրի կանայք վայելում են խորհրդային իշխանության առաջին օրից—պետական իշխանության օրգաններում տղամարդկանց հավասար ընտրելու և ընտրվելու իրավունքը: Մեր երկրում այդ իրավունքն այնքան բնական է թվում, որքան ապրելու, շնչելու, շարժվելու իրավունքը: Իսկ կապիտալիստական երկրներում կինը մինչև այժմ զրկված է այդ իրավունքից կամ այն ստացել է կիսատ-

պատ ձևով։ Նույնիսկ մի շարք բուրժուական դեմոկրատական երկրներում, օրինակ, Ֆրանսիայում, Բելգիայում, Շվեյցարիայում, կանայք իրավունք չունեն ընտրելու և վո՛չ էլ ընտրվելու։

ՍՍՀՄ Գերագույն Խորհրդի և Միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունները ցույց տվին, թե մեր երկրում որքան լայնորեն է իրագործվում պետական իշխանության բարձրագույն օրգաններում կանանց ընտրելու և ընտրվելու իրավունքը, ընտրությունները ցույց տվին, թե ինչպես վիթխարի կերպով է աճում կանանց քաղաքական գիտակցականության մակարդակը, նրանց քաղաքական ակտիվությունը։

ՍՍՀՄ Գերագույն Խորհրդի դեպուտատների մեջ 189 կին կա (16.5 տոկոսը)։ Միութենական և ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդներում ընտրված են 848 կանայք։ Միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդների նախագահների և նախագահների տեղակալների թվում 9 կին կա (27.3 տոկոսը), իսկ նախագահությունների կազմում՝ 27 (13.2 տոկոսը)։ Ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդների նախագահություններում՝ 65 կին (22 տոկոսը)։



Պետության կառավարման աշխատանքին մասնակից են այժմ կանանց ամենալայն մասսաները։ Ավելի քան մեկուկես միլիոն կանայք մասնակցում են գյուղական ու քաղաքային խորհուրդների սեկցիաների և դեպուտատական խմբակների աշխատանքին։

Աշխարհը դեռևս երբեք չի տեսել կանանց կուլտուրական և քաղաքական մակարդակի այսպիսի արագ, իրոք հրաշալի աճ, նրանց հասարակական ակտիվության և ստեղծագործական ուժերի աճ։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿՐԻ ԿԱՆԱՅՔ

Սոցիալիստական հասարակարգը դաստիարակել է կնոջ նոր տիպ, որի համար հանուն հայրենիքի բարօրության կատարված աշխատանքը դարձել է պատվի, փառքի, արիության և հերոսության գործ։

«Այդպիսի կանայք չկային և չէին կարող լինել հին ժամանակ» (Ստալին)։

Միայն Սոցիալիզմի Երկիրը կարող էր ծնել այնպիսի անվեհեր հերոսուհիներ, ինչպես մեր նշանավոր օդաչուհիները՝ Խորհրդային Միության հերոսներ Վալենտինա Գրիզոդուբովան, Պոլինա Օսիպենկոն և Մարինա Ռասկովան:

Միայն Սոցիալիզմի Երկիրը կարող էր ծնել ստախանովյան շարժման հերոսուհիներ, ստախանովյան շարժում, որը աշխատանքի արտադրողականության չտեսնված վերելք է ապահովում և պայմաններ է նախապատրաստում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար:

Վերջին տարիներին արդյունաբերության մեջ, կոլտնտեսային դաշտերում, տրանսպորտում, կուլտուրական շինարարության ասպարեզում աճել են կին ստախանովականների նոր կադրեր, որոնք ե՛լ ավելի վեր բարձրացրին աշխատանքի ստախանովյան արտադրողականությունը:

Վրացական ստախանովական կին ջուլհակ Գելինաձեյի մեթոդը, որը 1938 թվի սեպտեմբերին քննարկեց ազգային հանրապետությունների մետաքսարդյունաբերության ներկայացուցիչների խորհրդակցությունը,— տարած-



վում է Վրաստանի, Ադրբեջանի, Թուրքմենիայի, Ուզբեկստանի մետաքսի գործարաններում:
Ընկ. Գելինաձեն առաջ է քաշված Վրաստանի մետաքսարդյունաբերության կառավարչության պետի տեղակալի պաշտոնում:

Կանանց ստախանովյան շարժումը տարածվել է նաև ծանր արդյունաբերության մեջ: Մոսկվայի՝ Օրջոնիկիձեյի անվան հաստոցաշինական գործարանի կոմյերիտուհի— ստախանովական Միխայլովան ըստ արժանավույն գրավեց ԽՍՀՄ Գերագույն խորհրդի դեպուտատ, շքանշանակիր Ի. Ի. Գուդովի տեղը դազգյահի առաջ և արդեն 4-րդ անգամ նորման կատարեց 400 տոկոսով: Ռացիոնալիզատորական առաջարկությունների համար նա բազմիցս պարգևատրվել է:

Մեր երկրի անվանի մեքենավարուհի, երկաթուղու՝ աշխարհում առաջին կին- պետի (Մոսկվայի շրջանային երկաթուղու) — Զինոյիդա Տրոյիցկու նախաձեռնությունը կենդանի արձագանք գտավ կին— երկաթուղայինների և երկաթուղայինների կանանց մեջ: Երկաթուղային տրանսպորտում ծանրաքաշ գնացքներ են վարում արդեն ութը կին—մեքենավարներ, որոնք լավ, ստախանովյան աշխատանքի հա—

մար պարգևատրվել են «Պատվավոր յերկաթուղային» կրծքանշանով:

Կանանց ստախանովյան շարժման հաղթությունները վիթխարի յեն գյուղատնտեսության մեջ: Ստախանովական ողակավարուհիներ Մարիա Գնիլենկոն Խարկովի մարզից, ՌՍՖՍՀ Գերագույն Խորհրդի դեպուտատ Վալենտինա Զալովան Կուրսկի մարզից «Նովի սվետ» կոլտնտեսությունից, Ալեքսանդրա Կիրյուշկինան Ռյազանի մարզի «Բորբա» կոլտնտեսությունից, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի դեպուտատ Թեկլիբայևան Կիրգիզիայից և մյուսները յուրաքանչյուր հեկտարից հավաքել են հազար և ավելի ցենտներ շաքարի ճակնդեղ, կրկնապատիկ գերազանցելով Մարիա Դեմչենկոյի նշանավոր ռեկորդը:

Ալեքսանդրա Կիրյուշկինան իր հոդվածում գրում է՝ «Մեր հայրերն ու պապերն այսպես եյին դատում՝ «Հողը վատ է, այն չես կարող փոխել», սակայն մենք գիտենք, վոր այդ ճիշտ եր անհատական, սակավահող տնտեսության համար: Իսկ այժմ, կոլտնտեսային կարգերում, մենք պետք է հողից վերցնենք այն բոլորը, ինչ վոր նա կարող է տալ: Իհարկե, մենք կախարդություն չենք արել հողի գլխին, չենք անհանգստացրել սրբերին և սրբապատ-



կերներ չենք ման ածել: Մենք ոգտագործել ենք միայն այն, ինչը յեղել է մեր կոլտնտեսության մեջ, մեր Սասովյան ռայոնի ամենաառաջավոր կոլտնտեսության մեջ: Մենք կիրառեցինք ագրոտեխնիկայի ամենանորագույն որենքները, մենք ինքներս անհրաժեշտ համառություն և հավատ ցուցաբերեցինք դեպի մեր ուժերը»:

Բամբակի դաշտերի կին ստախանովականներ Մարիա Բերեժնովան Ադրբեջանում, Տոխտախան Մումինովան Ուզբեկստանում և ուրիշները որ-ավուր բամբակի հավաքման նորման գերակատարում եյին 6—8 անգամ:

Կանանց տրակտորային բրիգադների, կին տրակտորիստների, կոմբայնավարուհիների համամիութենական սոցիալիստական մրցությունը բազմապատկեց կին-ստախանովականների շարքերը տրակտորիստների մեջ և հսկայական արդյունքներ տվեց ստալինյան 7—8 միլիարդ փութ հացահատիկի համար մղվող պայքարում:

**Սոցիալիստական շինարարության բոլոր հատվածներում ձեռք բերած նվաճումների համար, յերկրի պաշտպանության ամրապնդման գործում ցուցաբերած արիության, խիզախության և ծառայու-**

թյունների համար բազմաթիվ կանայք պարգևատրված են Խորհրդային Միության շքանշաններով։

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ՄՈՐ ՅԵՎ ՄԱՆԿԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ

Կանանց կադրերի արագ աճը արտադրության մեջ, նրանց հասարակական ակտիվության աճը հնարավոր դարձավ աշխատավորության կուլտ-կենցաղային սպասարկման նկատմամբ կուսակցության և կառավարության հսկայական հոգատարության շնորհիվ, աշխարհի ամենակարճ բանվորական օրվա և աշխատանքի պահպանության, մայրության ու մանկության պահպանության աշխարհի լավագույն օրենսդրության շնորհիվ։

Կուսակցությունը և Խորհրդային իշխանությունը շատ բան են արել, վորպեսզի կնոջն ազատեն տնային տնտեսության աշխատանքից։ Այդ նպատակով ստեղծված է կուլտուր-կենցաղային հիմնարկների—ճաշարանների, գործարան-խոհանոցների, լվացքատների, կարի արհեստանոցների և այլն լայն ցանց։



Նախահեղափոխական Ռուսաստանում հացի գործարաններ ամենևին չկային, իսկ այժմ Խորհրդային Միության մեջ մենք ունենք 325 խոշոր ավտոմատիկ հացի գործարաններ։ Ցորենի հացի արտադրությունը 1936 թվին, 1932 թվի համեմատությամբ, ավելացել է 4 անգամ, յերշիկներինը՝ 3,7 անգամ։

1936 թվին հրատարակվեց մոր և մանկան նկատմամբ ստալինյան հոգատարության հիանալի փաստաթուղթը—աբորտներն արգելելու, ծննդկանների նյութական օգնությունն ավելացնելու, ծննդատների, մանկամսուրների և մանկապարտեզների և այլն ցանցն ընդարձակելու օրենքը։

Ցարական Ռուսաստանում 1914 թվին հիվանդանոցներում և ծննդատներում ընդամենը միայն 6800 մահճակալ կար ծննդկանների համար։ Մեզ մոտ արդեն 1937 թվի վերջերին 121,680 մահճակալ կար ծննդկանների համար։ 1914 թվին ցարական Ռուսաստանում ընդամենը 9 մանկական կոնսուլտացիա կար, 1937 թվին Խորհրդային Միության մեջ արդեն 4384 կոնսուլտացիա կար։

Մինչև հեղափոխությունը մանկական պոլիկլինիկաներ և ամբուլատորիաներ, Մոր ու

մանկան տներ ամենևին չկային։ Առ 1-ն հունվարի 1937 թվի ԽՍՀՄ-ում 887 մանկական պոլիկլինիկաներ ու ամբուլատորիաներ և 457 մոր ու մանկան տներ կային։

1914 թվին ցարական Ռուսաստանում մանկական մսուրներում կար 550 տեղ, իսկ մանկապարտեզներում ու հրապարակներում՝ 7 հազար տեղ։ 1937 թվին մեզ մոտ արդեն 1.8 միլիոն տեղ կար մշտական մանկամսուրներում և մանկապարտեզներում, չհաշված գյուղական սեզոնային մանկամսուրները և մանկական հրապարակները, որոնք ամեն տարի մի քանի միլիոն երեխայի են սպասարկում։

Պիոներական ամառային ճամբարներն ամեն տարի ավելի քան մեկուկես միլիոն երեխաներ են գնում։

Կառավարության 1936 թվի հունիսի 27-ի դեկրետով պետական նպաստ է սահմանված բազմազավակ մայրերին։

Պետության ընդհանուր ծախսը մայրության և մանկության պահպանման գործի վրա 1936 թվին կազմեց 2 միլիարդ 100 միլիոն ռուբլի, իսկ 1937 թվին— ավելի քան 4 միլիարդ ռուբլի։

Խորհրդային պետության այս հոգատարությունը մոր ու մանուկների նկատ-



մամբ և սոցիալիստական ընտանիքի երջանիկ, նյութապես ապահով կյանքը շուտով անդրադարձան ծննդաբերության աճի վրա։ Դեռևս 1935 թվին, առաջավոր կոմբայնավարների ու կոմբայնավարուհիների խորհրդակցությանը ընկեր Ստալինն ասաց,— «Այժմ մեզ մոտ յուրաքանչյուր տարի բնակչության զուտ աճը կազմում է մոտ 3 միլիոն հոգի։ Այդ նշանակում է, որ ամեն տարի մենք աճում ենք ամբողջ Ֆինլանդիայի չափով»։ Այդ ժամանակվանից ծննդաբերությունն էլ ավելի է աճել։ 1937 թվին, 1936 թվի համեմատությամբ, ծննդաբերությունն աճեց ևս 18 տոկոսով։

Բոլոր կապիտալիստական, առանձնապես ֆաշիստական երկրներում տարեց-տարի ավելի ու ավելի է կրճատվում ծննդաբերությունը, աճում է երեխաների ու ծննդկանների մահացությունը, աճում է պոռնկությունը, աճում են ինքնասպանությունները և որդեսպանությունները, սովի, աղքատության և գործազրկության հողի վրա։

Ճապոնիայում 1938 թվի առաջին երեք ամիսներում ծնունդների թիվը 22 հազարով պակաս էր քան 1937 թվի նույն ժամանակաշրջա-

նում։ Մահվան դեպքերի թիվն այդ նույն ժամանակամիջոցում ավելացավ 51,700-ով։

Յերրորդ հնգամյակի պլանում, վորը պետի քննարկվի կուսակցության 18-րդ համագումարում, նախատեսված է պետության ծախսերի հսկայական ավելացում սոցիալական ապահովագրության, բազմազավակ մայրերին նպաստ տալու, առողջապահության, մասնավորապես ծննդկաններին ծննդատնային օգնություն ցույց տալու և մանկական հիվանդանոցների ընդարձակման գծով,— մշտական մանկամսուրներում և մանկապարտեզներում տեղերի թիվը պլանով նախատեսված է 1942 թվին հասցնել 4,2 միլիոնի։

Այդ բոլոր միջոցառումներն աշխատավորության նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման համար յերրորդ հնգամյա պլանով նախատեսված վիթխարի ձեռնարկումների սոսկ մի մասն են։ Այդ բոլոր միջոցառումները նպատակ ունեն խորհրդային ժողովրդի համար այնպիսի բարեկեցության և կուլտուրականության բարձրացում ստեղծել, «վորոնք անհասանելի յեն կապիտալիզմի ամենա-



հարուստ յերկրների համար և նշանավորումեն սոցիալիզմի ուժերի իսկական ծաղկման, նոր, սոցիալիստական կուլտուրայի ծաղկման սկիզբը» (ԽՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման յերրորդ հնգամյա պլանը (1938–1942 թ. թ.), ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարում ընկ. Վ. Մոլոտովի զեկուցման թեզիսները, վոր հիմնականում հավանության են արժանացել ՀամԿ(բ)Կ կենտկոմի քաղբյուրոյի կողմից)։

## ԿԻՆԸ ԽՍՀՄ-ՈՒՄ—ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԵԾ ՈՒԺ Է

Մեր յերկրի կնոջ առաջ բացված են բոլոր դպրոցների և բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները։

Խորհրդային իշխանության 20 տարիների ընթացքում ավելի քան 40 միլիոն մեծահասակներ, վորոնց մեծ մասը՝ կանայք, վերացրել են իրենց անգրագիտությունը։

Ահագին թվով կանայք— բանվորուհիներ, կոլտնտեսուհիներ, ծառայողներ, տնային տնտեսուհիներ — սովորում են ա-

մեն տեսակ տեխնիկական դասընթացներում։

Այժմ աշխարհում ոչ մի տեղ ուսանողուհիների այնպիսի թիվ և բարձրագույն ուսումնական հաստատություններում կանանց այնպիսի բարձր տոկոս չկա, ինչպես մեր մոտ։

Արագընթաց աճում են կին-ինտելիգենցիայի կադրերը մեր երկրում։ Ցարական Ռուսաստանում ընդամենը 2 հազար բըժըշկուհիներ կային։ Մեզ մոտ 1936 թվին արդեն ավելի քան 53 հազար բժշկուհի կար։

Կանանց միջից առաջ են քաշվել բազմաթիվ արժեքավոր գիտական աշխատողներ։ Գիտության վաստակավոր գործիչ Լ. Ս. Շտերնը՝ որն աշխատում է ֆիզիոլոգիայի և բիոքիմիայի պրոբլեմների վրա, ընտրված է ԽՍՀՄ գիտությունների իսկական անդամ։ Գիտությունների ակադեմիայի անդամ-թղթակիցներ են ընտրված պատմական գիտությունների դոկտոր Ա. Մ. Պանկրատովան, տնտեսական գիտությունների դոկտոր Մ. Ն. Սմիտ-Ֆալկները, տնտեսական գիտությունների դոկտոր Ռ. Ս. Լևինան, բժշկական գիտու-



թյունների դոկտոր Ռ. Ն. Պովլիոցկայան։ Գիտության վաստակավոր գործիչ պրոֆեսոր Կ. Պ. Ուլեզկո-Ստրոգանովան ընտրված է պատվավոր ակադեմիկոս։

Խորհրդային կանայք իրենց միջից առաջ են քաշում հազարավոր տաղանդավոր երաժիշտներ, արտիստներ, գրողներ, նկարիչներ, քանդակագործներ։ Նրանցից շատերը պարգևատրված են խորհրդային միության շքանշաններով։

Միջնակարգ և բարձրագույն կրթության տարածման և կինոթատրոնների, ակումբների, գրադարանների ընդարձակման ուղղությամբ երրորդ հնգամյա պլանով նախատեսված ձեռնարկումները խորհրդային կնոջ առաջ կուլտուրական աճի է՛լ ավելի լայն հեռանկարներ են բաց անում։

## ԴԵՊԻ ՀԱՄԿ(Բ)Կ 18-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Խորհրդային կինը ջերմորեն սիրում է իր Սոցիալիստական հայրենիքը—ամբողջ աշխարհի աշխատավորության հայրենիքը։ Մեր կինը տոգորված է խոր ինտերնացիոնալիզմով։ Նա հուզմունքով է որ-ավուր հետևում իսպանական հերոսական ժո-

ղովրդի պայքարին ֆաշիստական ագրեսորների դեմ, չինական քաջարի ժողովրդի ազատագրման պայքարին՝ ճապոնական ինտերվենտների դեմ, այն բանին, թե ինչպես ամբողջ աշխարհում աճում է ժողովրդական միասնական ճակատը հանուն խաղաղության, ընդդեմ ֆաշիզմի ու պատերազմի։

Հիշելով մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ցուցումները կապիտալիստական շրջապատման մասին, մեր խորհրդային կինը պատրաստվում է պաշտպանելու իր Սոցիալիստական հայրենիքը։

Մոտ 2 միլիոն կանայք զանվում են Պաշտ – Ավիաքիմի շարքերում, տասնյակ հազարավորներ ընդգրկված են հրաձգային սպորտի մեջ, 4 միլիոն հոգի –ՀՍԹՊ-ի խմբակներում։

ԽՍՀՄ-ի կանայք ակտիվորեն մասնակցում են ֆիզկուլտշարժմանը, նրանց մեջ կան սպորտի բոլոր տեսակների վարպետներ։ Ավելի քան կես միլիոն կանայք 1932 թվից մինչև 1938 թիվը հանձնել են ՊԱՊ-ի առաջին աստիճանի նորմաները։

«Ռոդինա»-յի անձնակազմի հերոսական թռիչքը վոգևվորեց խորհրդային բազմա-



թիվ աղջիկների և թռիչքային գործի տեխնիկայի տիրապետման լայն շարժում առեղծեց։

Մենք քիչ թվով կին օդաչուներ, տեխնիկներ, ռադիստներ, բորտ-մեխանիկներ, ինստրուկտորներ չունենք։ Ավիոտեխնիկումներում հատուկ վաշտեր կան կին-յերիտասարդությունից։ Թռիչքային դպրոցներում կան կանանց եսկադրիլյաներ։ Մեր յերկրի հեռավոր-արևելյան կին հայրենասերներն արդեն ցույց տվին իրենց մարտական պատրաստականությունը, ակտիվորեն օգնելով Կարմիր Բանակին՝ Խասան լճի մոտ մարտերի ժամանակ, արիության և խիզախության համար նրանցից վոմանք պարգևատրվել են Խորհրդային Միության շքանշաններով։

Խորհրդային կինը տիրապետում է բոլշևիզմին։ Հազարավոր կանայք ուսումնասիրում են «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը», բարձրացնելով իրենց գրագիտությունը և գաղափարական-քաղաքական կոփումը։

Եվ ջերմ սիրով դեպի հայրենիքը և ատելությամբ՝ դեպի նրա թշնամիները, մեր յերկրի կանայք ակտիվորեն մասնակցում են ժողովրդի թշնամիների, ֆաշիզմի տրոցկիստական-բուխարինական գործակալների մերկացմանը, կապիտալիստական հետախուզությունների լրտեսներին, դիվերսանտներին, գործակալներին բռնելուն:

Համամիութենական կոմունիստական կուսակցության 18-րդ համագումարը մեր յերկրի աշխատավոր կանայք դիմավորում են արտադրական նոր նվաճումներով, նոր նվերներով մայր-հայրենիքին:

Պայքարելով աշխատանքային կարգապահության ամրապնդման համար, պայքարելով սոցիալիստական սեփականության հափշտակիչների, լոդրերի, գործալքների, գոփողների, չվողների դեմ, մեր յերկրի կինը խանդավառությամբ կմասնակցի յերրորդ հնգամյա պլանի կատարմանը, վորը նրան ե՛լ ավելի յերջանիկ և ուրախ կյանք ե բերում:

Իր առաջ կանգնած խնդիրների մեծությունը գիտակցելով, դեպի հայրենիքը,



կուսակցությունը, մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը տածած ամենախոր նվիրվածությամբ վոգեվորված խորհրդային կինը դիմավորում ե ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարը:

Ցեվ մարտի 8-ի որն ամբողջ աշխարհում կհնչի նրա հաղթական, բերկրալի կանչը՝ Կեցցե՛ խորհրդային Միությունը — ամբողջ աշխարհի աշխատավորության հայրենիքը:

Կեցցե՛ Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի մեծ, անպարտելի դրոշը:



